Պիոներական ճամբարի մի հեռու ծայրում, ուշ երեկոյի մթության մեջ, վառվում էր խարույկը: Դա այն մեծ խարույկը չէր, որի շուրջը հավաքվում էին ճամբարի բոլոր պիոներները և զվարթ ժամանակ անցկացնում՝ մինչև քնելու շեփորի հնչելը: Դա մի փոքրիկ խարույկ էր, որն այդ օրը վառվում էր շեփորից էլ հետո և որի շուրջը նստոտել էին ընդամենը տասնհինգ-քսան պիոներներ: Եվ նրանք տխուր էին ու լուռ, արմունկները հենել էին ծնկներին, ականջները հենել էին ձեռքերին և մտածկոտ ու անթարթ նայում էին խարույկին:

Դրանք բարձր դասարանցի մեծահասակ պիոներներ էին և այդ տարի նրանք վերջին անգամ էին լինում պիոներական ճամբարում: Մի քանի օր հետո նրանք էլ, բոլորի նման, կվերադառնան քաղաք՝ իրենց դպրոցները, բայց հաջորդ տարի այլևս չեն գա ճամբար՝ բոլորի նման: Կավարտեն դպրոցը, կմտնեն տարբեր տեխնիկումներ, տարբեր ինստիտուտներ, համալսարանի տարբեր ֆակուլտետներ: Իսկ ոմանք էլ չեն շարունակի ուսումը և առաջ կգնան աշխատանքի մեջ, աշխատելու ընթացքում: Բայց, ինչպես էլ որ լինի, նրանք շուտով կցրվեն տարբեր կողմեր, իսկ դրանից ավելի հետո՝ ավելի տարբեր կողմեր...

Նրանք հրաժեշտ էին տալիս իրենց պատանեկությանը և դրա համար էին տխուր: Վաղը, իհարկե, նրանք ողջույն կտան իրենց նոր հասակին և կլինեն ուրախ, բայց այսօր հո վաղը չէ՞: Այսօրն այսօր է, և վառվում է նրանց վերջին խարույկը, և նրանք տխուր են:

Ինչպիսի՜ արտոնություն. նրանց թույլ են տվել խարույկը պահել քնելու շեփորից էլ հետո և խարույկի շուրջը նստել քնելու շեփորից էլ հետո: Բայց դա ոչ թե ուրախացնում, այլ ավելի է տխրեցնում նրանց, որովհետև թույլ են տվել նրա համար, որ այլևս պիոներներ չեն համարում նրանց, որովհետև արդեն «ձեռք են քաշել» նրանցից...

Ա՜խ, ինչպես կուզեին նրանք, որ լինեին ավելի փոքր, որ հիմա գային այստեղ ճամբարի ղեկավարներից, բարկանային նրանց վրա, հանգցնեին խարույկը և տանեին նրանց քնելու...

Բայց ոչ ոք չէր գալիս, նրանք նստել էին ինքնագլուխ, որովհետև մեծահասակ էին: Եվ նրանց տխրության արանքներից երբեմն ժպտում էր հպարտությունը՝ իրենց մեծահասակ լինելու համար:

Պիոներներից մեկը վերջապես գլուխը բարձրացրեց, նայեց խարույկից այն կողմ, իր դեմուդեմը նըստածին և, կարծես սթափեցնելու համար նրան, բարձրաձայն հարցրեց.

— Հը՞, ի՞նչ ես լռել, ինժեներ՛:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Քո օրինակին եմ հետևում, կոմպոզիտո՛ր,— եռ չմնաց խարույկի այն կողմում նստածը:

Նրանք վաղուց էին խոստովանել իրար, թե ինչ են ուզում դառնալ ապագայում: Խոստովանել էին, չգիտես ինչու, որպես գաղտնիք: Եվ եթե նրանք երեկ բարձրաձայն, բոլորի ներկայությամբ, այդպես բաց անեին իրենց գաղտնիքները, ապա խիստ կվիրավորվեին իրարից: Բայց այսօր, վերջին խարույկի մոտ նստած, նրանք մեծահասակներ էին և կարող էին բաց անել ոչ միայն միմյանց գաղտնիքները, այլև ամեն մեկն իրը: Այսինքն՝ ոչ թե կարող էին, այլ արդեն բաց էին արել: Իսկ հիմա որոշեցին բաց անել նաև ուրիշների գաղտնիքները, կիսագաղտնիքները կամ մինչև անգամ ոչ-գաղտնիքները, որովհետև շատերը երբեք չէին էլ թաքցրել դրանք:

— Դու, կարծեմ, ապագա բժիշկ ես:

— Այո՛: Ի՞նչ է ցավում: Մի քիչ սպասիր՝ մինչև ավարտեմ, հետո կբժշկեմ...

# ԱՍՏՂԻԿ

ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

Ծիծաղեցին: Պիոներների տրամադրությունն ընկնում էր բարձրանալ: Պարզ է, նրանք տխուր էին, որովհետև մինչև հիմա մտածում էին անցյալի մասին: Իսկ չէ՞ որ հիմա սկսեցին խոսել ապագայի մասին...

Ամեն մեկն ասաց, թե ինչ էր ուզում դառնալ ինքը: Մեկը «համեստորեն» որոշել էր դառնալ «ընդամենը» տիեզերագնաց, մյուսը՝ գեներալ, բայց թե ինչպիսի գեներալ՝ զինվորակա՞ն, թե՞ երկաթուղային,— այդ մեկը դեռ չէր որոշել:

Խարույկի շուրջը բոլորածներից մեկը, որը գտնըվում էր ոչ առաջին շարքերում, այլ մթության մեջ, խոսեց: Ոչ ոք չտեսավ նրան, բայց լսեց ձայնը.

— Լավ, տղանե՛ր, դուք բոլորդ ուզում եք դառնալ ինժեներ ու գեներալ, իսկ ո՞վ պիտի դառնա բանվոր ու լեյտենանտ: Ես, օրինակ, որոշել եմ դառնալ որակյալ որմնադիր...

Ոչ, սովորել չուզենալուց և ծուլությունից չէ, որ նա որոշել էր այդպես: Նա պարզապես ավելի շատ սիրում էր գործ ունենալ քարի ու ցեմենտի հետ, քան կարկինի ու քանոնի: Ընկերները հասկանում էին դա և, ծափահարելով դեպի մթությունը, հավանություն տվեցին նրան:

Ծափահարությունից հետո անհետացան տխրության վերջին հետքերը:

Քամին մթության հեռվից բերեց մի տաք հոսանք և հպեց տղաների մեջքերին: Հոսանքն այնքան տաք էր, որքան որ, համարյա, խարույկը:

Մի ծղրիդ անընդհատ ճռռում էր խարույկից ոչ հեռու: Թե՞ բավական հեռու: Ինչպե՞ս որոշես: Եվ, տարօրինակ բան. քանի դեռ պիոներները տխուր էին ու լուռ, նրանք չէին լսում ծղրիդների երգը, որովհետև տարված էին իրենց մտքերով: Իսկ այժմ, թեև նըրանք աշխուժացել էին և աղմկում էին, ծղրիդի ձայնը լսվում էր որոշակի՝ մերթ մի կողմից, մերթ՝ մյուս: Լռում էր միայն մի վայրկյան, վազում մի այլ տեղ, երևի նրա համար, որ ձայնի հետքով չգտնեն նրան, և նորից շարունակում էր ճռռալ:

Բայց գուցե դա մի ծղրիդ չէր, այլ մի քանի՞սն էին, որոնք երգում էին փոխնեփոխ: Պիոներների հետ միասին կարծես նրանք էլ էին աշխուժացել և դարձել աղմկոտ:

— Ապագայում ինչ լավ բան էլ լինի,— ասաց նա, որը որոշել էր դառնալ քիմիկոս,— միևնույնն է, մենք սիրով պիտի հիշենք մեր պիոներական անցյալն ու հենց թեկուզ այս երեկոն, այս խարույկը...

— Երդվե՛նք, ընկերնե՛ր, որ սիրով կհիշենք,— բացականչեց ապագա բանաստեղծը:

— Երդվելով չեն սիրում ու հիշում,— սառը դատողաբար ասաց ապագա իրավաբանը,— և երդվելու կարիք էլ չկա:

— Բայց և այնպես երդվե՛նք,— պնդեցին ապագա անասնաբույժն ու խոհարարը, գործագործն ու դեղագործը:

Երդվեցին: Բոլորը:

— Իսկ ինչպե՞ս ստուգենք, որ պահել ենք մեր երդումը,— հարցրեց ապագա փիլիսոփան, որը հայտնի էր իր կասկածամտությամբ՝ ամեն ինչում:

— Մի՞թե չենք հավատում իրար,— վիրավորվեց ապագա մաթեմատիկոսը:

— Հավատալը հավատում ենք,— ասաց ապագա խանութի վարիչը,—բայց շատ լավ կլիներ, եթե տեսնեինք, լսեինք իրար:

— Բայց դա դժվար է,— հառաչեց ապագա դերձակը,— ո՛վ գիտե, իրար մո՞տ պիտի լինենք, թե՞ հեռու ցրված:

Անհա այդ րոպեին լսվեց մի աղջկա ձայն և բոլորը հանկարծ հիշեցին, որ իրենց միջև նստած է նաև մի պիոներուհի՝ Աստղիկը: Ա՜խ, այդ աղջիկները... Նրանք միշտ ասում են կա՛մ տղաներից ավելի հիմար բաներ, կա՛մ՝ ավելի խելոք: Այս անգամ Աստղիկն ասաց ավելի խելոք.

— Բոլորս որոշել ենք պիտանի մարդ դառնալ, ուրեմն եկեք որոշենք, որ մեր առաջին լավ գործը

կոչելու ենք մի՛ որևէ բառով, միևնույն բառով: Այդ բառը հայտնի կդառնա, և դրանով մենք կհասկանանք, որ մեր այսինչ կամ այնինչ ընկերը նույնպես, պահել է իր խոստումը:

— Իսկ ի՞նչ բառով,— հարցրեց կասկածամիտ փիլիսոփան:

— Աստղիկի անունով,— բացականչեց ոգևորված բանաստեղծը:

— Ոչ թե որովհետև դու Աստղիկն ես,— սառը դատողաբար բացատրեց իրավաբանը, այլ որովհետև քո անունը գեղեցիկ է:

— Ես իմ ղեկավարած խանութի անունը կդնեմ «Աստղիկ»,— ասաց մեկը:

— Իսկ ես «Աստղիկ» կանվանեմ իմ հնարած առաջին սինթետիկ կտորը:

— «Աստղիկ» կկոչվի իմ առաջին օպերան:

— Եվ իմ առաջին պոեմը:

— Եվ իմ բուծած ցեղական ձին:

— Եվ իմ...

— Եվ իմ...

Խարույկը հանգչելու վրա էր, բայց ամեն մի նոր «Աստղիկի» հետ մեկտեղ կարծես երկնքից մի նոր աստղիկ էր իջնում խարույկի մեջտեղը և նորից բոցնեկում այն: Աստղիկները շատացան, շատացան, և հանկարծ բոլորը տեսան, որ խարույկը վաղուց է հանգել, և դա երկինքն է նրանց դիմաց՝ իր բազմաթիվ աստղիկներով...

Պիոներները վեր կացան և գնացին քնելու՝ վաղը դիմավորելու համար իրենց ապագայի առաջին օրը...

* * *

Դա օգոստոսի վերջին օրն էր: Այժմ անցել է այդ օրն էլ, այդ ամիսն էլ, այդ տարին էլ: Անցել են էլի մի քանի տարիներ: Ու թեև դեռ ոչ մի «Աստղիկ» չի հայտնվել դեռևս, բայց դա այդպես էլ պիտի լինի առայժմ.— չէ՞ որ դրանց հեղինակները դեռ սովորում են: Կանցնի էլի մի որոշ ժամանակ և ի՞նչ կլինի, ի՞նչ կլինի... Ամբողջ աշխարհը կլցվի «Աստղիկ»-ներով: Իմ «Աստղիկ» սիստեմի ավտոմեքենայով ես կգնամ սովխոզի դաշտերը, հիացած կնայեմ լոլիկի «Աստղիկ» նոր տեսակին, որոնց թփերի արանքներից անցնելով, մոլախոտերը կպոկի քաղհանող «Աստղիկ» մեքենան: Երեկոյան կվերադառնամ քաղաք, կգնամ կինո-թատրոն՝ «Աստղիկ» նկարը դիտելու և կինոյից դուրս գալիս կհանդիպեմ Աստղիկին: Կնստենք նստարանի վրա, կվերհիշենք մեր բոլոր ընկերներին ու նորից կըհասկանանք, որ այս ամենն սկսվեց այն չքնաղ երեկոյան, երբ մենք նստել էինք պիոներական խարույկի մոտ և այնքան տխուր էինք ու այնքան ուրախ էինք...



# ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹՅԱՆ ՎԵՐՋԻՆ ԴԱՍԸ

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Դասամիջոց էր: Երբ դասամիջոցը վերջանար, կսկսվեր քառորդի վերջին երկրաչափության ժամը: Ոչ ոք չէր ուզում, որ վերջանար դասամիջոցը:

— Սովորե՞լ ես,— Դավթին հարցրեց Անուշը:

Դավիթը թափահարեց գլուխը.

— Միայն առաջինը:

— Գոնե այսօր սովորեիր:

— Մեկնումեկդ բացատրե՛ք ինձ,— շտապեցնում էր Համիկը,— հիմա կանգը կտա:

Լուսինեն գծագիրը գծեց, սկսեց բացատրել:

— Չեմ կենտրոնանում,— ասաց Համիկը,—ավելի լավ է՝ գիրքը կարդամ:

Գիրքը եկրով հենեց պատին, սկսեց կարդալ: Միայն շրթունքներն էին շարժվում, ձայն չկար:

— Ես ինձ ապահովել եմ,— գոհ ժպտաց Վահագնը,— քառորդս «չորս» է:

— Մեկ էլ տեսար փորձելու համար հարցրեց, կարծես չգիտես ընկեր Ստեփանյանին,— ասաց Վարդուհին:

— Դժվար թե, բայց էլի գլուխս կպրծացնեմ:

Զանգը հնչեց: Քիչ անց ուսուցչուհին ներս մտավ:

— Նստե՛ք:

Նույն վայրկյանին դասագրքերը մտան նստարանների տակ: Բոլորն էլ գտնում էին, որ ամենահարմարը գիրքը ծնկներին դնելն է: Միայն Դավիթն էր դնում պայուսակի վրա: Նրա նստարանի փեղկը կիսապոկված էր, և արանքից երևում էին գրքի տողերը: Միջանցքին նայող պատուհանի ապակին սպիտակ էր ներկված: Բոլոր նրանք, որոնց երբևէ դասարանից դուրս էին հանել, եղունգով խազեր էին քաշել ներկի վրա, և ի վերջո անթափանց ապակու վրա գոյացել էր երեքկոպեկանոցի մեծության մի շրջանակ: Հիմա այնտեղից մի աչք էր նայում: Ո՞վ գիտե, ո՛ր դասարանից և ինչո՛ւ էր դրսում: Ով էլ որ լիներ, անշուշտ կզգում էր, որ դասարանում բոլորին էլ համակել է ինչոր տագնապ:

— Ես գա՞մ,— հարցրեց Նունեն:

Նա ուզում էր իր «չորսը» ուղղել:

— «Երկուս» ունեցողներին եք հարցնելու, չէ՞,— խեթ նայելով Նունեին՝ հարցրեց Անուշը:

Ուսուցչուհին չպատասխանեց: Նրա գրիչը սահեց ազգանունների վրայով, կանգ առավ, կետ նշանակեց, հետո սահեց ցած ու նշանակեց երկրորդ կետը:

— Դավի՛թ, Սամվե՛լ:

Դավիթը դանդաղ վեր կացավ, մի աչքը դեռ գրքի կողմը, նայեց Վահագնին: Վահագնը գլխով արեց՝ կհուշեմ: Սամվելը ցատկեց տեղից, ձեռքերը խոթեց գրպանները ու շարժեց ականջները: Դասարանում ուրիշ ոչ ոք չէր կարողանում ականջները շարժել, և, երբ նա կարմացած աչքերով նայում էր շուրջն ու ականջները տարուբերում ետ ու առաջ, բոլորը ծիծաղում էին: Այս անգամ, սակայն, ոչ ոք չծիծաղեց:

— Գնա՛,— նրա ուսը հրեց Հայկը:

— Լավն է, չէ՞, ընկեր Ստեփանյանը,— Քնարիկի ականջին շշնջաց Համիկը,— խիստ է, բայց լավն է: Քառորդի վերջում ուզում է, որ բոլորը իրենց «երկուսները» ուղղեն:

Նա կզգաց, որ ուսուցչուհին իրենց կողմն է նայում, և լռեց: Դավիթն ու Սամվելը կողք-կողքի կանգնեցին գրատախտակի մոտ ու նայեցին միմյանց:

— Տնային խնդիրը չի ստացվում,— ասաց Վահագնը:

Ժամանակ շահելու այնքան հին ու կրկնված ձև էր, որ բոլորը քմծիծաղ տվեցին: Բայց ուսուցչուհին երևի չհասկացավ ու սկսեց խնդիրը բացատրել:

Սամվելը ձեռքի անհանգիստ շարժումներ էր անում: Սահականուշը բացեց գիրքը և մեկնեց առաջ: Սամվելը սկսեց կարդալ:

# ՀԱՅՐՍ ԵՎ ԵՍ

ՌԱՖԱՅԵԼ ՇԻՐՈՅԱՆ



Տնեցիները հաճախ էին կշտամբում հորս.

— Շատ ես խառնվում քեզ չվերաբերվող գործերին, անտեղի հուզվում, բորբոքվում:

— Խառնվել եմ ու պիտի խառնվեմ: Ինձ չվերաբերվող բան չկա, փողոցն էլ իմն է, քաղաքն էլ իմն է, երկիրն էլ իմն է, և ես ուզում եմ, որ ամեն տեղ կյանքը գեղեցիկ լինի:

Ահա նա անցնում է փողոցով և աչքն ընկնում է խոշոր տառերով գրված մի ցուցանակի՝ «Երկաթեղենի կռպակ»: Ներս է մտնում: Վաճառասեղանի մոտ ննջում է գործակատարը, միջին տարիքի գեր մի մարդ, գլուխը մաքուր սափրած: Ոտնաձայնից վեր է թռչում և կեսքուն-կեսարթուն հարցնում.

— Ի՞նչ եք ուզում, ընկե՛ր:

— Փոքրիկ կողպեք:

— Ուրի՞շ,— տալով կողպեքը, հարցնում է վաճառողը:

— Մեկ էլ էն կուզեի,— ասում է հայրս,— որ ուղղեք ձեր խանութի ցուցանակը:

— Ինչի՞: Ծո՞ւռն է կախված,— անհանգստանում է վաճառողը և պատրաստվում դուրս գալ:

— Ո՛չ: Սխալ է գրված: Պիտի լինի «կրպակ» և ոչ թե «կռպակ»:

— Էսքան տարի ճիշտ էր, հիմա սխա՞լ դարձավ:

— Միշտ էլ սխալ է եղել, բայց կարևորություն չեն տվել: Ուղղե՛ք, անհարմար է:

— Ներողություն, քաղաքացի՛, էդ ո՞ւմ անունից եք էդպես խոսում,— նեղացած հարցնում է վաճառողը:

— Մեսրոպ Մաշտոցի:

— Մեսրոպն ո՞վ է: Մեր կառավարիչը Մաթոսն է: Էդ ե՞րբ են փոխել, որ չենք իմացել...

Մի քանի օր հետո հայրս նորից է գնում այդ կրպակը, և ի՞նչ: Նոր ցուցանակ՝ գեղեցիկ, ճաշակով գրված, առանց տառասխալի:

Մի կիրակի օր էլ զբոսանքի էինք դուրս եկել հորս հետ: Մեր առջևից մաքուր, կոկիկ մայթով քայլում էր մի երիտասարդ՝ գլանակը ձեռքին: Վերջացնելով ծխելը, նա գլանակի մնացուկը շպրտեց մայթին: Հայրս մոտեցավ նրան.

— Ինչո՞ւ եք կեղտոտում մայթը, երիտասա՛րդ,— ասաց նա,— հապա աղբամանները ինչի՞ համար են: Եթե բոլորն այդպես վարվեն, ի՞նչ կլինի մեր քաղաքի վիճակը:

Երիտասարդը չիմացավ, թե ինչ պատասխանի: Նայեց հորս պատկառելի դեմքին, ճերմակող մազերին և անխոս գետնից վերցրեց գլանակի մնացուկն ու գցեց աղբամանի մեջ:

Երբ մենք դարձյալ երկուսով մնացինք, ես ասացի.

— Հայրի՛կ, դու հո միլիցիոներ չե՞ս, քո ի՞նչ գործն էր:

— Իսկ այդ միայն միլիցիոների գործը չէ: Ինչքան էլ սուր աչք ունենա միլիցիոները, ամեն բան չի տեսնի: Միլիցիոներները քիչ են, իսկ մենք՝ շատ: Մենք

---

— Երկու թեորեման էլ գիտե՞ս,— հարցրեց Դավիթը:

— Միայն առաջինը:

— Ես էլ:

Ուսուցչուհին ակնոցի վրայից նայեց նրան: Դավիթը մանրում էր կավիճը և երևի չէր զգում, որ փշուրները թափվում են հատակին: Սամվելը պատուհանից դուրս էր նայում:

— Հիմա հասկանալի՞ է, Վահա՛գն:

— Հասկանալի է, ընկե՛ր Ստեփանյան:

Դասարանում ամեն շարժում լռեց: Գրատախտակի մոտ կանգնած տղաները նայեցին միմյանց.

— Սկսե՛ք:

Մեկնումեկը պիտի առաջինը պատասխանի և «երեք» կստանա:

«Ինչ էիր անում ամբողջ օրը, որ լրիվ չես սովորել»,— մտքում Դավիթի վրա բարկացավ Սամվելը: Հետո մտածեց, որ ինքն էլ չի սովորել: Բայց իր համար գոյություն ունի մի ուրիշ աշխարհ՝ կինոյի հայտագրերի, երեկոյան լույսերի, քամու, անծանոթ, բայց գիշերվա մթության մեջ հարազատ դարձած մարդկանց աշխարհը:

«Տուն գնալուց հետո անմիջապես պիտի սովորեի,— ափսոսաց Դավիթը,— թե չէ կեսօրին մտածեցի երեկոյան կսովորեմ, երեկոյան մտածեցի դասի գալուց առաջ: Հիմար բնավորություն ունեմ: Գոնե այդ Սամվելը սովորած լիներ»:

Սամվելը հիշեց, որ երեկ դպրոցի կողքի կինոթատրոնում հիմար կինոնկար էին ցուցադրում: Չէր սիրում վատ կինոնկարների հայտագրեր ամրացնել: Բայց այդ էլ իր աշխատանքն էր:

— Ինչո՞ւ եք կանգնել,— բարկացավ ուսուցչուհին,— չե՞ք սովորել, ի՞նչ է:

— Սովորել ենք,— ասացին նրանք միաժամանակ:

*նույնպես պարտավոր ենք հսկել, . որ փողոցում կարգ ու կանոն, մաքրություն լինի:*

*Համոզվեցի, որոշեցի հետևել նրա օրինակին:*

*Մի անգամ տեսնեմ մեր հարևանի տղան՝ Լիպոն, պաղպաղակը կերավ և թուղթը շպրտեց մայթին.*



*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

*— Ինչո՞ւ ես կեղտոտում մայթը,— ասացի ես:— Չես տեսնո՞ւմ, հրեն աղբամանը:*

*— Քե՞զ ինչ, հորդ փողո՞ցն է,— կոպտեց Լիպոն:*

*— Վերցրո՛ւ թղթերը,— ասացի ես:*

*— Սրա՞ն մի տես, ի՛նքդ վերցրու:*

*Ես բռնեցի Լիպոյի թևից ու քարշ տվի թղթի կողմը:*

*— Վերցրո՛ւ,— ասում եմ:*

*Այդ խոսքի վրա Լիպոն մի հատ հասցրեց ինձ: Ես էլ նրան: Կռվա՞նք: Ես Լիպոյին գետին գլորեցի: Նա տզզաց: Այդ պահին ականջիս տակ սուլոց լսեցի: Ապա մի ուժեղ ձեռք թևիցս բռնեց ու ինձ վեր բարձրացրեց. նայեցի՝ խաչմերուկի միլիցիոներն էր:*

*— Ինչո՞ւ եք կռվում,— ասաց միլիցիոները՝ հայացքն ինձ ուղղելով:*

*— Բա ինչո՞ւ է կեղտոտում մայթը, — ասացի ես:*

*— Ո՞վ է կեղտոտում մայթը:*

*— Տզզացողն, ո՞վ: Հրեն թուղթը գետին շպրտած:*

*Միլիցիոները ոտից-գլուխ զննեց երկուսիս և թեթև ժպտալով՝ դիմեց ինձ.*

*— Ո՞ւմ տղան ես:*

*— Փականագործ Միքայելի:*

*— Հա՛, ճանաչում եմ... Հորդ ասելու եմ, որ փողոցում քեզ վատ ես պահում, կռիվ ես սարքում:*

*— Առաջինը ինքը խփեց,— լացակումած ասացի ես:*

*— Ո՞վ, ինքը:*

*— Տզզացողն, ո՞վ:*

*Միլիցիոները ամոթանք տվեց երկուսիս էլ և դարձավ Լիպոյին.*

*— Վերցրո՛ւ թուղթը, «հերո՛ս», մյուս անգամ չանես:*

*Լիպոն սուսուփուս վերցրեց թուղթը, գցեց աղբամանը ու քիթը կախ գնաց տուն:*

*Հաջորդ օրը երեկոյան հայրս ծիծաղելով ասաց.*

*— Փողոցում այդ ի՞նչ տուրուդըմբոց ես սարքել: Հարևանի տղային ստիպել ես գետին գցած թուղթը վերցնել: Ո՞վ է քեզ այդ իրավունքը տվել: Չեղա՞վ: Ընկերաբար հասկացնեիր, որ չի կարելի փողոցը կեղտոտել: Իսկ դու ուժ ես բանեցնում: Բա եղա՞վ: Մեկ ուրիշն էլ քեզ գետնով կտա, հետո՞...*

*Ծպտուն չհանեցի: Հայրս այստեղ էլ իրավացի էր:*

---

Ուսուցչուհին սկսեց ակնոցը մաքրել: Սամվելը շուրջը նայեց: Հիմա ոչ ոք ոչնչով օգնել չէր կարող:

Նորից քառորդը «երկուս» էր լինելու:

«Առաջինը ես կպատասխանեմ,— մտածեց Դավիթը,— առաջինը ինձ կանչեց ընկեր Ստեփանյանը: Այդ Սամվելը թող քիչ թրև գա: Իբր, աշխատում է, ինչ աշխատանք է ո՜ր:

— Ժամանակ չկա,— ուսուցչուհու համբերությունը սպառվեց,— դեռ քանի՜ հոգու պետք է հարցնեմ:

«Տանը Դավթի հախից կգան,— մտածեց Սամվելը,— տղաներն ասում են նրա հայրը շատ խիստ է»: Նա աշխատեց վանել իրենից քառորդում «երկուս» ունենալու մասին տհաճ, կպչուն միտքը ու հրեց Դավթի ուսը.

— Դո՛ւ գնա:

Դավիթը չշարժվեց: Նա հիշեց, որ անցած շաբաթ իրենք կռվեցին, երևի աննշան ինչ-որ բանի համար, որովհետև պատճառը չի հիշում ու ինքը հարվածեց նրան:

Ասենք, իրենք միշտ էլ կռվել են: Ինչո՞ւ:

— Այս ի՜նչ մարդիկ են,— բարկացավ ուսուցչուհին,— չգիտեք՝ նստե՛ք:

Գրատախտակի մոտ կանգնած էին երկու ծույլ տղա, դասարանի ամենավատ սովորող աշակերտները: Դասարանը լուռ սպասում էր:

— Գնա՛,— կրկնեց Սամվելը:

Դավիթը տարտամ քայլերով մոտեցավ գրատախտակին:

Մի քիչ հաշտված, մի քիչ տխուր, մի քիչ էլ թեթևացած հոգով Սամվելը մտածեց, որ երեկոյան կգնա աշխատանքի ու փողոցներում իրենց դասարանցիների, հարևանների, բոլոր, բոլո՜ր մարդկանց համար կամրացնի կինոյի գույնզգույն հայտագրեր:

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

Տարբեր դարաշրջաններում կառուցված շուրջ հինգ հազար հուշարձան կա Հայաստանում: Հանրապետության յուրաքանչյուր վեց քառակուսի կիլոմետրի վրա հաշվըվում է մեկ մեծարժեք պատմական հուշարձան և խաչքար:

Մեր լեռնաշխարհում 4—6 հազար տարեկան ճարտարապետական հուշարձաններ գոյություն ունեն: Բրոնզե դարաշրջանից պահպանվել են մեծ քանակով մեգալիթյան կառուցվածքներ, կիկլոպյան ամրոցներ, բերդ-շեներ, կացարաններ և այլն:

Իզուր չէ, որ Հայաստանը համարվում է աշխարհիս պատմական մեծարժեք հնությունների խոշոր և հնագույն բնակավայրերից մեկը:

Անցած վերջին հիսուն տարիների ընթացքում, նյութական կուլտուրայի և ճարտարապետական հին հուշարձանների հետ մեկտեղ, մեր հանրապետության քաղաքներում ու գյուղերում վեր խոյացան նաև նոր կոթողներ:

Մենք հպարտությամբ ենք տոգորվում, երբ քայլում ենք Էրեբունիի բլրալանջով կամ մտնում ենք Մատենադարանի սրահները: Հպարտանում ենք Սարդարապատի հերոսամարտի ու Մեծ եղեռնի զոհերի հիշատակին կանգնեցված կոթողների վեհությամբ: Հին ու նոր բոլոր հուշարձանները մեր հոգևոր հարստությունն են, դրանք պետք է պահպանվեն աչքի լույսի պես և վայելուչ վիճակում հանձնվեն գալիք սերունդներին:

Այս գործում իրենց անելիքներն ունեն նաև հանրապետության պիոներ-դպրոցականները: Լավ օրինակ է տվել այս տեսակետից Աշտարակի շրջանը: Այստեղ հնությունների պահպանության ընկերության անդամների թիվն անցնում է 10 հազարից, որոնցից ավելի քան 9 հազարը դպրոցականներ են:

Շրջանի դպրոցներում, պիոներտներում, գրադարաններում հաճախակի կազմակերպվում են հայ ժողովրդի պատմությանը, նրա դարավոր մշակույթին նվիրված դասախոսություններ, վեկուցումներ, կրույցներ, ցուցահանդեսներ, կինոֆիլմերի ցուցադրումներ:

Ագարակի միջնակարգ դպրոցի դիրեկտոր Գ. Հովսեփյանի գլխավորությամբ աշակերտները ուսումնասիրել են շրջանի ճարտարապետական հուշարձանները, լուսանկարել և ուշագրավ ցուցահանդես են կազմակերպել, ստանձնել են հուշարձանների պահպանման շեֆությունը: Ընկերության շրջանային խորհուրդը դպրոցականների համար էքսկուրսիաներ է կազմակերպել դեպի մեր հանրապետության պատմական, տեսարժան վայրերը: Նրանք եղել են Էջմիած-



«Անի» պիոներական ճամբարի պիոներները, տեսեք, թե ինչպիսի ամոթալի դրոշմ են թողել պատի վրա։ Թե վանքի ի՞նչն են նրանք կարգավորել, հայտնի չէ, բայց շտապել են պարծենկոտաբար ազդարարել այդ մասին ի լուր աշխարհի... և իրենց անճոռնի գրությամբ կեղտոտել են պատը։

նում, Գորիսում, Սևանում, Հաղպատում, Ջվարթնոցում, Գառնիում, Գեղարդում և այլ տեղեր: Առանձնապես արդյունավետ են եղել շրջանի ներսում կազմակերպված էքսկուրսիաները, որոնց ժամանակ նրանք ոչ միայն դիտել ու հիացել են հուշարձաններով, այլև մաքրել ու բարեկարգել են նրանց շրջակայքը, օգնել են վերականգնվող կոթողների շինարարական աշխատանքներին:

Վերջին տարիներին այս շրջանում համարյա չեն նկատվում հուշարձանների պատերի վրա գրոտելու փաստեր:

Աշտարակի շրջանի դպրոցականները հանդես եկան կոչով՝ ուղղված հանրապետության բոլոր դպրոցականներին: Այն տպագրվեց «Ավանգարդ» թերթի 1969 թ. դեկտեմբերի 23-ի համարում, ջերմ ընդունելության արժանացավ ու լայն արձագանք գտավ բոլոր դըպրոցականների շրջանում:

Գովելի է նաև Սիսիանի շրջանային պիոներ-տան հայրենասերների նախաձեռնությունը: Ժողկըրթբաժնի տեսուչ Ալբերտ Ավետիսյանի ղեկավարությամբ նրանք ստեղծել են հնագիտական մի եզակի թանգարան, որն արժանացել է համամիութենական ճանաչման: Թանգարանի ցուցանըմուշները դիտվել են Երևանում, Մոսկվայում, Լենինգրադում և Բրեստում:

Պատմական Սյունիքը հարուստ է ճարտարապետական կոթողներով: Ամեն տարի ամռան ամիսներին Բաղաբերդում իրենց հանգիստն են անցկացնում հարյուրավոր դպրոցականներ: Նրանց ուժերով ստեղծվել է պատմական Բաղաբերդի քարտեզն ու մակետը:

Արթիկի շրջանի Հառիճի տաճարի բակումն է գտնվում այն շենքը, որտեղ երկար դարեր տեղավորված է եղել Շիրակի առաջին բարձրագույն դպրոցներից մեկը: Այստեղ են սովորել ու գործել Կոմիտասը, Ավետիք Իսահակյանը և այլ նշանավոր մարդիկ: Գյուղի միջնակարգ դպրոցի ուսմասվար Գրիգոր Սարգսյանի նախաձեռնությամբ պիոներ-դպրոցականները մաքրել ու բարեկարգել են հուշարձանների շրջակայքը, անցկացրել էլեկտրական գիծ և լուսարձակներով լուսավորել հուշարձանը, նաև կազմակերպել են հետաքրքիր ցուցահանդես:

Հանրապետության գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտի գիտական աշխատողները, Նոյեմբերյանի շրջկենտրոնի միջնակարգ դպրոցի դիրեկտոր Ս. Չիլինգարյանի մասնակցությամբ, ուսումնասիրել և պեղել են կիկլոպյան 20 կառուցվածքներ, ամրոց-բնակատեղիներ, մեգալիթյան կուլտուրայի կոթողներ: Այդ աշխատանքներին ակտիվ մասնակցություն են ունեցել 9—10-րդ դասարանների աշակերտները: Նրանց հայտնաբերած խեցեղեն իրերի մեծ մասը ունեն հարուստ վիմագիր կարդեր: Կան և կենդանակերպ, թռչնակերպ կավանոթներ, բրոնզե կացիններ, դաշույններ, նիզակներ, նետեր և զենքի այլ տեսակներ: Դպրոցին կից ստեղծվել է հնագիտական թանգարան, որտեղ ցուցադրվող իրերի թիվը անցնում է հարյուրից:

Պատմական հուշարձանների պահպանման, ուսումնասիրման ու բարեկարգման ուղղությամբ շնորհակալ գործ են կատարում նաև Եղեգնաձորի շրջանի Մալիշկա, Խաչիկ, Գլաձոր, Շատին և այլ գյուղերի պիոներ-դպրոցականները:

Շրջկենտրոնի պիոներ-տանը կից ստեղծվել է տուրիստական ակումբ, որտեղ ընդգրկված են մի քանի տասնյակ պիոներ-դպրոցականներ: Նրանք ուսումնասիրել են շրջանի գրեթե բոլոր հուշարձանները: Ամեն անգամ էքսկուրսիայի մեկնելուց առաջ վեկուցում կամ զրույց են լսում այդ երթուղու վրա գտնվող պատմական հուշարձանի մասին. էքսկուրսիայի ընթացքում կատարում են լուսանկարումներ, բարեկարգում են հուշարձանների շրջապատը:

Պիոներ-տանը ստեղծել են գեղեցիկ ցուցափեղկեր, որոնց վրա



*Ահա արվեստի այն հրաշալի կոթողը, որ ջարդվեց բոլորովին վերջերս... և ո՞ւմ ձեռքով։*

ցուցադրված են հուշարձանների լուսանկարները, մակետները և այլն:

Ցավոք, դեռևս կան առանձին անգիտակից և հանցագործ տարրեր, որոնք շարունակում են վնաս հասցնել մեր պատմական հուշարձաններին, գրոտում են պատերին յուղաներկերով ու բրիչներով: Անցյալ տարի Եղեգնաձորի շրջանի Ամաղու գյուղի տերիտորիայում գտնվող Նորավանքի հուշարձանախմբի մի քանի նշանավոր խաչքարեր ջարդվեցին: Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դա կատարվել է մի քանի դպրոցականների կողմից: Դեռևս կան պատանիներ ու աղջիկներ, որոնք փորձում են «անմահանալ», գրոտելով և նույնիսկ փորագրելով հինավուրց կառույցների դարավոր պատերին իրենց անունները:

Մոտենում են ճամբարային օրերը: Մեծ թվով աշակերտներ, պիոներ-դպրոցականներ իրենց արձակուրդն անց են կացնելու մեր կուսաշունչ լեռների գրկում: Այդ նվիրական վայրերում գտնվելով, նրանք հուշարձանների պատմությունը ուսումնասիրելու հետ մեկտեղ, պետք է ամեն ինչ անեն մեր կոթողները անվթար և մաքուր պահելու համար:

Մեր պիոներ-դպրոցականների խնդիրն է՝ անողոք պայքար մղել բոլոր նրանց դեմ, ովքեր կփորձեն վնաս հասցնել մեր հնություններին, կգրոտեն պատերին և կամ ինքնագլուխ պեղումներ կկատարեն, կավերեն և կկեղտոտեն հուշարձանների շրջապատը:

Ժողովրդի կուլտուրան որոշվում է ոչ միայն նրա ունեցած կուլտուրական արժեքներով, այլև դրանց նկատմամբ եղած հոգատար վերաբերմունքով:

*Ի. ԷԼԼԱՐՅԱՆ*

*Պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության նախագահի տեղակալ*

# Գ Ի Շ Ե Ր Վ Ա   Ե Ր Գ

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*



Մհերիկն իր անկողնում
Պառկել, ականջ է դնում,
Թե ոնց է ծիտն արտի մեջ
Կտցում ցորենն ու քնում:

Ոնց եղեգներն օրորով
Խշխշում են գետափին,
Ոնց է ջուրը ձայնակցում
Ուռիների մեղմ ծափին:

Ոնց է ձկնիկն արծաթե
Կապույտ քարի տակ ննջում,
Ոնց են գորտերը հանկարծ
Օձ տեսածի պես ճչում:

Ոնց է փախչում գայլը խեղճ
Արամ պապի մահակից,
Երբ որ ինչ-որ մի ձմեռ
Ներս է մտնում մեր բակից:

Քունը դրան արանքից
Մոտենում է քայլ առ քայլ՝
Հիմա, իբրև, աշխարհում
Ո՛չ ձմեռ կա, ո՛չ էլ գայլ:

Հետո ննջում է փափուկ,
Հետո նրա երազում
Ինչ-որ արծաթ ձկնիկներ,
Ուռիներ են փսփսում:

Հետո տեսնում է մեկ էլ,
Որ դաշտերի մեջ անհուն,
Թե ոնց է սարը հանկարծ
Անիվներով հեռանում:

Ոնց իր ջրե ձեռքերով
Առուն մեն-մի գիշերում
Իր ափերին գունավոր
Ծաղիկ ու խոտ է շարում:

Լուսինն արտի մեջ քնատ
Քնած լորեր է որսում.—
Բայց ո՛չ լոր կա, ո՛չ էլ արտ.
Իր թոռան հետ շշուկով
Այդ Լուսիկ տատն է խոսում:

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*

# ՎԱՐԴՆ ՈՒ ՄԱՆՈՒՇԱԿԸ

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ

Վարդն ու Մանուշակը քույր-եղբայր են եղել,
Միշտ իրար հետ կռվել, միշտ իրար են նեղել.
Վարդը եղունգներով ճանկռոտել է նրան,
Նա էլ պոկոտել է շեկ մազերը սրա:

Մայրը շատ է նրանց խելք ու խրատ տվել,
Նրանք՝ «Էլ չենք անի»,— ասել են ու երդվել,
Ասել են, բայց հետո՝ էլի կռիվ ու լաց,
Էլի ճանկռած ձեռքեր, էլի աչքեր ուռած:

Երբ չի օգնել նույնիսկ պաչելն ու ծեծելը,
Մայրիկը բարկացել, մի օր անիծել է,
Որ իրար հետ անվերջ կռվող եղբայր ու քույր
Մեկը մեկից միշտ էլ կարոտ մնան կյանքում:

Ինչպես ասաց մայրը, եղավ հենց այդպես էլ,
Այդ օրվանից նրանք իրար էլ չեն տեսել,
Որովհետև արդեն իրենց ամբողջ կյանքում
Տարբեր ժամանակ են միշտ էլ նրանք ծաղկում:



# ՀՈՒՆԻՍԻՆ ԷՐ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Իրիկուն էր: Հավաքվեցին
Երեխաներն ու խոսք բացին,
Թե ե՞րբ արդյոք ծագեց ահեղ
Պատերազմը արյունահեղ:

— Հունիսի՞ն էր...
— Մենք չենք եղե՞լ...
— Մեր պապերն են կռիվ մղել:
— Ա՛յ, իմ պապը խփել է տանկ.
Կուզե՞ք կանչենք՝ իրեն հարց տանք:
— Իսկ իմ պապը հրետանավոր
Ինքնաթիռ է գցել խոշո՜ր...
— Իսկ իմ պապը բռնել գերի
Քանի՜ ֆաշիստ զինվորների...

Ամեն մեկը մի բան ասաց.
Միայն Անուշը լուռ մնաց:
— Բա՛... ձեր տնից և ոչ մի մա՞րդ...
— Իմ տատիկն է գնացել մարտ.
Վիրավորներ է հավաքել.
Գիտե՞ք քանի մարդ է փրկե՜լ...—

Այսպես քանի՜ հազար ու բյուր
Տատեր, պապեր, եղբայր ու քույր,
Կովի ելան զենքը ձեռին,
Ու մեզ խաղաղ օրեր բերին:



# ՀԱՅ ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹՅԱՆ ՊԱՅԾԱՌ ԳՈՒՅՆԵՐԻ ԱՐՏԱՑՈԼՈՒՄԸ ԿԱՐ ՆՐԱ ԱՉՔԵՐՈՒՄ...

Հեռախոսով պայմանավորվել էինք հանդիպել Մատենադարանում: Որոշված ժամին գնացի Մատենադարան և նրան գտա ձեռագրերի պահարաններից մեկի մոտ: Առանց դժվարության գուշակեցի, որ այդ հենց նա է՝ Սիրարփի Տեր-Ներսեսյանը: Վտիտ մի կին, սպիտակած մազերը պարզ սանրվածքով հավաքած ծոծրակին, հագնված պարզ: Դանդաղ թերթում էր փոքրիկ մի մատյան, մտասևեռ կննում գիրքը կարդարող մանրանկարները:

Մագաղաթյա լռության մեջ ես լսում էի թերթերի մագաղաթյա խշշոցը և չէի համարձակվում մոտենալ ու խաթարել այդ լռությունը: Դարերի խորհրդավոր բառ ու բանով հագեցած այս սենյակում ո՞վ գիտե ինչ հետաքրքիր վրույցի էր բռնվել նա հնամյա ձեռագրի հետ, ինչ նոր բան էր որոնում այնտեղ, մըտքում ում հետ էր վիճում:

Կանգնել էի իրենից քիչ հեռու և սպասում էի, թե երբ կնկատի ինձ:

Մեկ էլ նա բարձրացրեց հայացքը: Ի՞նչ հայացք էր դա, ինչպիսի՞ աչքեր ուներ: Խոհուն, խորաթափանց, իմաստնացած: Քանի՜-քանի մագաղաթների վրա էին հակվել այդ աչքերը, քանի՜-քանի որմնանկարների ու խաչքարերի անվերծանելի թվացող, մաշված գծագրերի մեջ թափառել, խորասուզվել և գտել լուսավոր ելքը, վերծանել անվերծանելին: Ինձ թվաց, որ հայ մանրանկարիչների վերասլաց խոհերի և պայծառ գույների արտացոլումը կա այդ աչքերի մեջ:

Նկատեց ինձ.

— Դուք ինձ մոտ եկած եք, իսկ ես տարված... մոռցեր եմ շրջապատս: Կներե՛ք:

Նա ժպտաց բարի՜, բարի՜ մի ժպիտով: Եվ այդ ժպիտով էլ սկսեց հաղորդակցումը մեր միջև:

— Գիտե՞ք, Մատենադարանը ինծի համար սըրբավայր մըն է, որ ինքնամոռաց խոկումի կտրամադրե,— ասաց նա,— Հայաստան գտնված օրերուս բոլոր ժամերը կուզեմ հոս անցունել: Այնքա՜ն բան կպատմեն այս ձեռագրերը, այնքա՜ն գաղտնիքներ կթաքցնեն իրենց մեջ: Ամբողջ պատմություն մը, ժողովուրդի մը հարուստ մշակույթը, այս նույն ժողովուրդի էությունը, նկարագիրը կա այս ձեռագրերուն մեջ: Բացահայտել այդ էությունը և աշխարհին ըմբըռնելի դարձնել այդ՝ կնշանակե աշխարհը հարստացնել ինքնուրույն բույրով ու երանգով մը ևս, կնշանակե փառավորել հայ ժողովուրդի անունը...

Ինչպիսի՜ մաքուր, գեղահնչյուն հայերենով, ներշնչված շեշտով էր խոսում Սիրարփի Տեր-Ներսեսյանը այս բոլորի մասին:

Բայց ինչպե՞ս է նրա հոգում ծնունդ առել այն մեծ սերը հարապատ ժողովրդի մշակույթի, նրա ձեռագիր մատյանների նկատմամբ, մի սեր, որ ամբողջ կյանքում նրան չէր լքելու, դադար չէր տալու, մի սեր, որ նրա քայլերն առաջնորդել էր բոլոր այն թանգարանները, գրապահոցները, որտեղ հայկական ձեռագրեր են պահվում: Վենետիկ՝ Մխիթարյանների

հարուստ մատենադարանը, Երուսաղեմ՝ հայկական պատրիարքարանի ձեռագրատունը, Լոնդոն՝ Բրիտանական թանգարան, Վաշինգտոն՝ Ֆրիրի պատկերասրահ և բազում անձանց մոտ, ովքեր իրենց հավաքածուներում հայկական ձեռագրեր ու մանրանկարներ ունեն:

— Այդ սերը փոքր հասակես մեջս մտավ,— բացատրում է նա:— Անշուշտ լսած եք Պոլսի նշանավոր Օրմանյան պատրիարքի մասին, թերևս կարդացած ալ եք անոր մեծահատոր գիրքերը՝ «Ազգապատում»-ը, «Հայապատում»-ը: Ան մորեղբայրս էր: Ինը տարեկանիս որբացա մորմես և մեծցա մորեղբորս տանը, անոր շունչին տակ: Կտեսնեի, թե մինչև ուշ գիշեր գիրքերու վրա հակված՝ կկարդար, թուղթերու վրա կռացած՝ կգրեր: Կմոտենայի, կկանգնեի մոտը, կհարցնեի, թե ի՞նչ կգրե: Կնայեր ինձի հեռուներեն եկող հայացքով մը ու կհառաչեր.

— Մեր ժողովուրդին մասին կգրեմ: Բարդ է անոր պատմությունը, բարդ և հարուստ: Փրթած օղակներ կան, հանգույցներ, կնճիռներ, պատմության թատերաբեմեն անհետացած և դեռևս թատերաբեմին վրա գտնվող բազում ժողովուրդների հետ առնչություններ ունի այդ պատմությունը: Մեկ խոսքով՝ ուսումնասիրելու շատ բան կա: Եվ պետք է ուսումնասիրել՝ ոչ միայն ամբողջացնելու համար հայ ժողովուրդին կենսագրությունը, այլև պարզելու համար այն առնչությունները, որ ան ունեցած է մյուս ժողովուրդներու հետ, հայ մշակույթին ու պատմությանը տալու համար իր արժանի տեղը մարդկության պատմության մեջ: Եվ վստահ կրնաս ըլլալ, որ այդ տեղը բնավ ալ անշուք չէ:

— Երբ մորեղբայրս այսպես կխոսեր՝ բան մը կխլրտար, կշարժվեր մեջս, աչքերս կխոնավնային,— շարունակում է անվանի գիտնականը,— ո՞վ գիտե, գուցե այդ ժամերուն է, որ նախագծվեցավ ապագա ուղիս:

Այդ ուղին սկիզբ առավ Կոստանդնուպոլսի Եսայան վարժարանից, որտեղ նա սովորեց իր մայրենին, իր ժողովրդի պատմությունը և ձգվեց դեպի անգլիական վարժարան, ապա հասավ Փարիզ՝ Սորբոն:

Երիտասարդ աղջիկը 1914-ին կորցրել էր նաև հորը և այժմ այդ մեծ քաղաքում սովորելու և ապրելու համար տներում լատիներեն, ֆրանսերեն և անգլերեն մասնավոր դասեր էր տալիս: Համալսարանում նա բախտ է ունենում աշակերտելու հայտնի բյուզանդագետ Շառլ Դիլին և բյուզանդական արվեստի պատմության լավագույն մասնագետ Գաբրիել Միլեին, դասախոսներ, որոնք ճիշտ ուղղություն են տալիս իրենց ուշիմ ուսանողուհուն: Սիրարփի Տեր-Ներսեսյանը միաժամանակ հմտանում է բյուզանդագիտության, հին և միջին դարերի պատմության մեջ, ինքնուրույն հետազոտում միջնադարյան հայ արվեստը:

1927-ից դասախոսում է Սորբոնում, 1934-ին հրավիրվում է ԱՄՆ՝ Բոստոնի մոտ գտնվող Վելզլի կանանց կոլեջը՝ բյուզանդական և միջնադարյան արվեստի մասին դասախոսելու: Եվ այսպես կարճ ժամանակում Սիրարփի Տեր-Ներսեսյանի անունը ճանաչում է գտնում որպես հմուտ բյուզանդագետի: Բայց նրա միջազգային համբավը սկսվում է 1936 թվականից, երբ նա երկու արժեքավոր աշխատությունների համար ստանում է դոկտորի կոչում: Դրանցից մեկը Փարիզում լույս տեսած, 350 էջից բաղկացած վեցերորդ դարի կրոնական մի վեպի՝ «Վառլամի և Հովսափի պատմության» ուսումնասիրությունն էր, որը գիտնականը կատարել էր մեծ հմտությամբ, բաղդատելով այդ պատմության հունարեն և արաբերեն ձեռագրերը, մյուսը՝ Վենետիկի Մխիթարյան վանքում պահպանվող 12—14 դարերի 9 հայկական ձեռագրերի մանրանկարների ուսումնասիրությունն էր: Մինչև այդ աշխատությունը, հայ մանրանկարչությունը այդպիսի խորը և գիտական վերլուծման դեռ չէր ենթարկվել:

Առաջին աշխատությունը Փարիզում արժանանում է Հին արձանագրությունների և ձեռագրերի ակադեմիայի հատուկ մրցանակի, երկրորդին շնորհվում է Փարիզի հունագետների միության մրցանակը:

Այնուհետև իրար են հաջորդում Սիրարփի Տեր-Ներսեսյանի իրենց արժեքով միմյանց գերազանցող աշխատությունները: Այդ ցանկում կարևոր տեղ են գրավում հայկական միջնադարյան արվեստի պատմությանը նվիրված նրա գործերը, այսպես՝ 1945-ին լույս ընծայեց «Հայաստանն ու Բյուզանդական կայսրությունը» հատորը, որ կարճ ժամանակում ունեցավ երկրորդ հրատարակություն: Այս գրքում նա քննարկում էր ոչ միայն Հայաստանի և բյուզանդական կայսրության միջև եղած քաղաքական հարաբերությունները, այլև հայ ճարտարապետության, քանդակագործության, որմնանկարչության և մանրանկարչության հարցերն ու նրանց առնչությունները բյուզանդական արվեստի հետ:

Տարեցտարի Սիրարփի Տեր-Ներսեսյանի համբավը այնքան է մեծանում, որ եթե առաջներում որտեղ հայ մշակույթի արժեքներ կային, այնտեղ Սիրարփի Տեր-Ներսեսյանն էր, ապա հետագայում՝ որտեղ Սիրարփի Տեր-Ներսեսյանն էր, այնտեղ առկա էր հայ մշակույթը: Նա առաջինն էր, որ Ամերիկայի Միացյալ Նահանգների տարբեր համալսարաններում դասախոսու-



թյուններ կարդաց հայկական միջնադարյան արվեստի մասին՝ հայկական արվեստին տալով միջազգային անցագիր: ԱՄՆ-ի Հարվարդ համալսարանի հրատարակչության կողմից լույս ընծայված նրա «Աղթամար սուրբ խաչ եկեղեցին» հոյակապ աշխատության առաջաբանում կարդում ենք. «Սիրարփի Տեր-Ներսեսյանը բյուզանդական և հայկական արվեստի բնագավառում այնպիսի կարկառուն մի գիտնական է, որ ծանոթացման կարիք չունի: Համաշխարհային պատմության իր իմացությամբ, իր տքնաջան, ինքնուրույն հետազոտությունների և բարեխիղճ, անկողմնակալ վերաբերմունքի շնորհիվ, նա ավելի շատ բան է արել, քան ժամանակակից մյուս գիտնականները՝ հայ մանրանկարչության, ճարտարապետության և քանդակագործության ուսումնասիրությունը առաջին կարգի գիտության մակարդակի բարձրացնելու գործում»:

Այսօր Սիրարփի Տեր-Ներսեսյանը հայ միջնադարյան արվեստի ասպարեզում ամենահեղինակավոր անձնավորությունն է: Այս բնագավառին վերաբերվող աշխատությունները արժեքավորելու, ինչպես նաև վիճելի հարցերը լուծելու համար հաճախ են դիմում նրա օգնությանը: Նա ԱՄՆ-ի Սմիտ և Ուիլսոն կանանց կոլեջների պատվավոր դոկտոր է, Ամերիկյան միջնադարյան արվեստների ակադեմիայի անդամ: 1965 թվականին նա ընտրվեց Հայաստանի գիտությունների ակադեմիայի արտասահմանյան անդամ: Արտասահմանում գործող առաջին հայ գիտնականն էր նա, որ հայրենիքում արժանացավ այդ բարձր պատվին, նա աշխարհում առաջին կինն է նաև, որին հրավիրել են Փարիզի գիտական ամենաբարձր հաստատության՝ «Կոլեժ դը Ֆրանս»-ի մեջ դասախոսելու:

Սիրարփի Տեր-Ներսեսյանը այժմ ապրում է Փարիզում: Թողել է դասախոսական աշխատանքը և զբաղվում է միայն գիտական ուսումնասիրություններով: Անցած տարվա աշնանը նա նորից Երևանում էր: Չնայած ինը տարի էր անցել իր առաջին այցելությունից, բայց նա գրեթե չէր փոխվել, երբեք չէիք ասի, որ նա արդեն թևակոխել է իր 74-րդ տարին: Աշխույժ էր, աշխատունակ, աչքերում նույն խոհուն, իմաստուն, բարի արտահայտությունը, դեմքին միշտ պարզ, բարեհամբույր մի ժպիտ, և համե՜ստ, ծայրահեղորեն համեստ: Վեր էր կենում վաղ առավոտյան, աշխատանքի գնացող մարդու փութաջանությամբ հագնվում, արագ նախաճաշում, դուրս գալիս «Արմենիա» հյուրանոցից և գնում Մատենադարան, որտեղ ուսումնասիրություններին զուգընթաց նա ծանոթանում էր երիտասարդ գիտնականների գործերին, խորհուրդներով օգնում նրանց:

Նրա՝ Երևանում գտնվելու լուրը տարածվել էր, կանչահարում էին ամեն կողմից, հրավիրում այս ու այն տեղ: Բայց նա խուսափում էր հրավերներից, որովհետև հերթի էր դրել կարդալու երիտասարդ գիտնականներից մեկնումեկի աշխատությունը կամ էլ ընդունելու էր նրանց կարծիքներ փոխանակելու:

— Երևանի Մատենադարանը անսպառ գանձարան մըն է,— ասում էր նա:— Դեռևս այնքա՜ն բան կա ուսումնասիրելու, աշխարհին ցույց տալու: Եվ ուրախ եմ, շա՜տ ուրախ, որ ան իր հարկին տակ ունի շնորհալի երիտասարդ գիտնականներ: Միայն թե հարկավոր է, որ անոնք տիրապետեն շատ լեզուներու, հատկապես դրացի ժողովուրդներու լեզուներուն, որպեսզի կարողանան կիրառել համեմատական մեթոդը, կարողանան պարզել առնչությունները: Գիտության բարձունքները տքնաջան, համառ աշխատանքով կնըվաճվին, և նաև՝ մեծ սիրով ու նվիրումով:

Մեկնելուց մեկ ամիս անց լույս տեսավ նրա անգլերեն նոր գիրքը՝ «Հայերը»: Քննադատներն այս գիրքը համարում են Լոնդոնի «Հնագույն ժողովուրդներ և վայրեր» մատենաշարի ամենաարժեքավոր գործը, և ընդհանրապես հայ մշակույթի մասին անգլերեն լույս տեսած լավագույն աշխատությունը: Գրքի 216 էջերում հեղինակը խոսում է Հայոց աշխարհի հնագույն բնակիչների մասին, ուրվագծում է Հայաստանի պատմությունը, պատմում հայ գրականության, ճարտարապետության, նկարչության և քանդակագործության մասին: Գործին կցված են Հայաստանի պատմական աշխարհագրության մի շարք քարտեզներ:

Հարազատ ժողովրդի հանդեպ մեծ սիրով ու նվիրումով տոգորված ազնիվ ու տաղանդավոր գիտնականի մի գործ է սա, որով գիտական, անկողմնակալ, ճշմարիտ խոսք է ասվում աշխարհի հնագույն ժողովուրդներից մեկի՝ հայ ժողովրդի մասին, նրան մարդկության պատմության մեջ տալով այն տեղը, որին արժանի է:

Երևանում, մի հանդիպման ժամանակ Սիրարփի Տեր-Ներսեսյանն ասաց.

— Ամեն մեկ հայ, ուր ալ որ ապրի, առաջին հերթին իր ժողովուրդին պետք է ծառայե:

Այս նշանաբանով էլ ապրել է նա և դարձել հարգելի ու հեղինակավոր բոլորի, և առավելապես սիրելի իր ժողովրդի համար:

*ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆ*



# ՊԱՊԻ ԳԴԱԿԸ



ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Կորավ պապի գդակը, ի՞նչ եղավ պապի գդակը, մի կտոր հա՞ց դարձավ ու կորավ, թե առավ ու թռա՞վ, կորա՞վ ու կորավ պապի Բուխարայի խանին վայել մորթե գդակը:

Պապը զայրացավ. ախր գդակն հո ինքն իրեն չփախա՞վ տնից: Խռովեց, նստեց թախտին, ամպ դառավ... Ուրիշ գդակ չի ուզում, իր գդակն է ուզում: Ձյունն էլ եկել է հակառակի նման, բամբակվել դիզվել է տանիքներին, ծառերին ու, ծիծաղի նմանվելով, ճռճռում է ոտքերի տակ: Նոր տարին էլ՝ ըհը, ուր որ է, դռան շեմքից ներս կմտնի...

Անցան օրեր:

Մի անգամ հարևան ալևոր մարդիկ եկել պապի մոտ նստել զրույց են անում, իրենց գլխին եկած հին ու նոր բաներից հիշում: Մեկ էլ Սեռն ամին, թե.

— Ինչ ճիշտ է ճիշտ, մի տարի էլ իմ գդակն էր կորել, ման եկա՜, ման եկա՜, վերջը տեսնեմ էդ անիրավ ագռավն է...

— Հա՜, ճիշտ որ... Երեխե՛ք, վազե՛ք ծառերի վրա նայեք...

Մեզ էլ այդպիսի բան էր հարկավոր. հարայհրոցով վազեցինք այգի ու, թո՞ւ քեզ, չա՞ր սատանա, պապի գդակը հրեն բարդի ծառի վրա է, ագռավն էլ թառ եղած կռնչում է: Հայ-հարայ, ուզում ենք ելնել ծառից ցած բերել գդակը, հիմա էլ պապն է կանգնել՝ չէ ու չէ.

— Ձեռք չտաք...

— Պա՛պ, գողին ի՞նչ ես խղճում, թող դրա հախից գանք,— խնդրում ենք:

Իսկ նա, թե.

— Գողը՝ գող, բայց ձմռան օրով բույն չեն քանդի... Մեկ էլ ագռավն հո մարդ չի՞, որ հասկանա արածը, պետք է եղել, նա էլ տարել իրեն համար բույն է սարքել...

Չթողեց:

Համաձայնեց, որ նոր գդակ առնենք իր համար:

# ԱՆՉԱՓԱՀԱՍԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Եթե խելոք մնայիր, մորդ չբարկացնեիր, չջղայնացնեիր, նա չէր հիվանդանա, չէր ընկնի հիվանդանոցները...

Ինքը չէր ուզում հորը լսել: Նա ճիշտ չի ասում: Պետք է ասեր՝ եթե խելոք մնայինք... չբարկացնեինք... չջղայնացնեինք...

Թույլ տվին, որ այցելուները վերև բարձրանան: Մայրը, հիվանդանոցային խալաթով, խեղճ ու գունատ էր: Նա նստած էր անկողնում: Թեև ինքը հուզվում էր, բայց մորը մոտեցավ պարտականություն կատարողի սառնությամբ և համբուրեց նրա այտը: Հայրը ցածլիկ պահարանին դրեց կաթսաները և կոմպոտի բանկաները, նստեց մի ազատ աթոռի: Առողջության մասին հիվանդին տրվող «հիմա ինչպե՞ս ես», «ճաշըն ինչո՞ւ չես կերել», «ախորժակդ ի՞նչ է քաշում», «բժիշկն ի՞նչ է ասում» ամենասովորական հարցերը այցելությունից-այցելություն կրկնվելով՝ հոր համար դարձել էին բռնազբոսիկ: Ինքն այդ նկատում էր, որովհետև հոր ձայնի մեջ ձանձրացած հիվանդատիրոջ վատ թաքցրած գրգռվածություն կար: Մայրը մի ձեռքը դրել էր իր՝ Կարոյի ուսին, և ինքը կողքով հենված էր մնացել մահճակալի երկաթին: Պալատի մյուս հիվանդի մոտ այցելուները շատ էին: Խոսում էին իրար ընդմիջելով, էքսկուրսիայի եկածների պես աղմկում էին: Ինքը նախանձում էր, ափսոսում, որ իրենք քիչ են, անտրամադիր: Երևի նույնը հայրն էլ էր մտածել, քանի որ ասաց.

— Կարի ֆաբրիկայից եկան հարցրին: Ասացի, որ այստեղ ես:

— Բժշկին զանգահարել էին, հետո այցելեցին,— ասաց մայրը:

Մյուս այցելուները փորձեցին նրանց ընդգրկել իրենց թեթև խոսակցության մեջ, բայց մի քանի կարճ ու չոր պատասխան ստանալուց հետո, ձեռ քաշեցին:

— Տունը իրար խառնված կլինի,— ասաց մայրը:

— Քույրս մեկ-մեկ գալիս է:

— Արհեստանոցում ինչպե՞ս են գործերդ,— հարցրեց մայրը:

— Ոչինչ, յոլա ենք տանում:

Ինքը գոհ չէր, որ հայրը կոշիկ վերանորոգող է, «փինաչի», թեև ավելի փոքր ժամանակ իրեն հաճելի էր նայել, թե հայրն ինչպես կաշին կտրում էր դանա-

կով, խնդրում էր թույլ տալ, որ ինքն էլ կտրի: Եվ երբեմն հայրը դանակի կոթը դնում էր նրա ձեռքի մեջ ու ձեռքը բռնած, միասին կտրում էին կաշին: Լավ ժամանակ էր:

— Ե՞րբ են դուրս գրում,— հարցրեց հայրը:

— Դեռ երեք-չորս օր կքաշի:

Ինքը սպասում էր մոր հարցերին՝ դասերը սովորելու, գնահատականների մասին: Բայց մայրը հարցըրեց.

— Ինձ կարոտու՞մ ես, բալի՛կ ջան:

— Կարոտում եմ:

— Քեզ լավ պահիր, քրտնած ժամանակ սառը ջուր չխմես:

— Չեմ խմի:

— Խելոքացել է,— ասաց հայրը: Նրա դեմքի արտահայտությունը այնպիսին էր, որ իրենից՝ Կարոյից շնորհակալություն էր սպասում այդ ստի համար:

— Բա վերջը պիտի խելոքանա, հո էնպես չի՛ մնալու,— ասաց մայրը:

Մոր թևի տակ ինքը լարվում էր և ուզում էր, որ այլևս չխոսեն իր մասին: Հայրը ձեռքը տարավ այտին:

— Ատամդ քաշել տվի՞ր,— հարցրեց մայրը:

— Ժամանակ չի լինում...

Ինքը տեսավ հոր կտրուկ ծամածռությունը: Հայրը դատարկ ամանեղենը փաթաթում էր թերթի մեջ:

— Ուրեմն երեք-չորս օրից:— Նա փաթեթը տվեց Կարոյի ձեռքը.— Գնանք...

Ինքը այտի մոտ զգաց մոր շունչը, հետո տաք, խոնավ շրթունքները: Ուզում էր մորն ասել հանգստացնող բառեր, բայց հայրը բարկացածի շարժումներով արտահայտում էր անհամբերություն:

Նա պարկետը փայլեցնում էր ու մտածում, որ այդ շաբաթը շուտ անցավ: Մայրը հիվանդանոցից վերադարձել էր, չէր հավանել հորաքրոջ հավաքած-մաքրածը, շորերը նորից գցել էր տաշտը, ընդհանուր մաքրման համար տունը տակնուվրա էր արել, նորից կարգի էր բերել: Կարոն պարկետը փայլեցնում էր՝ խաղի բնույթ տալով արածին, որ շուտ չձանձրանա: Մայրը խոհանոցում ճաշ էր պատրաստում, հայրն էլ այնտեղ էր: Կարծես ոչ մի հիվանդանոց էլ չէր եղել, ամեն ինչ առաջվա նման էր:

— Կարո՜... Կարո՜...— կանչեցին ներքևից: Նա դուրս եկավ պատշգամբ:

— Արի՛... շո՛ւտ արա...— Տղաներն էին: Գնդակը խաղացնում էին մարզվող ֆուտբոլիստների պես:

Կարոն սենյակի կողմն է ցույց տալիս և ձեռ ու ոտով հասկացնում է, որ չեն թողնի... Մեկը ներքևից ձեռքը արհամարհական շարժեց: Կարոն կռահեց, որ նա դուրս տվեց՝ ի՛հ, դու էլ...

Նա թափով սենյակ մտավ: Կարող էր ծլկել... սակայն լռջացած շարունակում է փայլեցնել հատակը:

# ՃԱՆԱՉԻՐ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

*Սովետական Հայաստանը փոքր երկիր է, բայց զարմանալի հարուստ կենդանական աշխարհ ունի: Ոչ թե կենդանիներն են շատ, այլ կենդանական տեսակները, ցեղերը: Ինչո՞վ բացատրել դա: Նրանով, որ մեր երկիրը թեկուզ փոքր է, բայց աշխարհագրական միջավայրի և կլիմայի բազմազանություն ունի: Եթե Հայաստանի չափ մի կտոր վերցնենք Մերձվոլգյան հարթություններից, այդ կտորի վրա կունենանք միայն տափաստանային կենդանիներ: Մինչդեռ մենք ունենք մերկ ժայռեր, ուր ժայռաբնակ կենդանիներ են ապրում՝ քարակաքավ, քարայծ և այլն: Ունենք սարահարթեր, իրենց ուրույն կենդանիներով՝ գետնասկյուռ, համստեր, աղվես, խլուրդ և այլն: Ունենք անտառներ, ուր ապրում են այծյամները, եղջերուները, լուսանները և անտառաբնակ այլ կենդանիներ: Ունենք ճահիճներ, ուր բնակվում են ոնտրիա կամ ճահճաճագար կոչվող կենդանիները, եղեգնուտի կատուն, ճահճային թռչունները: Մեր երկրի մերձարևադարձային կլիմա ունեցող վայրերը, նախալեռնային և ալպիական գոտիները, այսպես կոչված «կմախքացած լեռները»,— դրանք բոլորն էլ կենդանիների համար տարբեր բնական միջավայրեր ունեն, ուստի և տարբեր տեսակի կենդանիներ են ապրում այդ վայրերում:*

*Ահա ինչու բազմապիսի ու խայտաբղետ է մեր երկրի կենդանական աշխարհը:*

*Մեր պարտքն է՝ ճանաչել մեր երկրի բնությունը և նրա վայրի բնակիչներին: Պիտի ճանաչենք յուրաքանչյուր կենդանու միջավայրը, նրա ապրելու, աճելու պայմանները, նրա բնավորությունը, որպեսզի օգնենք և նրա պահպանությանն ու զարգացմանը:*

*Վայրի կենդանիները մեր բնության զարդն են կազմում: Նրանք արժանի են մեր հոգատար վերաբերմունքին, մեր հովանավորությանը:*

*Եկեք, ուրեմն, մոտիկից նայենք նրանց:*

*Սկսենք մեր հանդերի ամենաուժեղ և ամենախոշոր բնակչից՝ արջից:*

*Այո՛, ուժեղ է և խոշոր արջը: Մեր երկրի արջերի միջին քաշը 120—130 կիլոգրամ է, թեև պատահում են երկու հարյուր կիլոգրամ քաշ ունեցող արջեր: Մի տարի մեր հարևան որսկան Շաքարը 16 փթանոց մի արջ սպանեց Հաղարծնի անտառում: Դա հավասար է մոտ 250 կիլոգրամի: Կարծես թե շատ խոշոր է եղել Շաքարի խփածը, այնպես չէ՞: Բայց այդ չափի արջերը Հյուսիսում խոշոր չեն համարվում: Այնտեղ ավելի խոշորները կան. Կամչատկայում, օրինակ, 570 կիլոգրամ քաշով մի գորշ արջ են խփել:*

*Մեզ մոտ փոքր ցեղի արջեր էլ կան, որոնց միջին քաշը հավասար է 50—60 կիլոգրամի:*

# ՀԱՅՐԵՆԻ ԲՆԱՇԽԱՐՀԸ

*Մեր հանրապետության ո՞ր մասերում են ապրում արջերը: Առաջին հերթին և ամենից շատ՝ անտառներում. Զանգեզուրի, Իջևանի, Դիլիջանի, Էոոու: Արագածից մինչև Մեղրի ժայռոտ ու քարքարոտ լեռնալանջեր են ձգվում, ուր այստեղ-այնտեղ կղզյակներով փոքր անտառներ կան: Այդ անտառակներում նույնպես արջեր են հանդիպում: Ինչո՞ւ է արջը անտառն ընտրել իր համար բնակության վայր: Թաքնվելու և իր կյանքը փրկելու համար: Հետո, իր սիրած կերն այնտեղ է: Թեև ինքը գիշատիչ գազան է, բայց շատ է սիրում պտուղներ: Փոքր ժամանակս մի անգամ անտառում տանձ էի թափ տալիս, մեկ էլ վերևից նայեմ տեսնեմ մի թուխ կենդանի թափածս տանձերը հավաքում է: Կարծեցի գոմեշ է, գոռգոռացի. փախավ. ահով տեսա, որ արջ է: Այնքան է սիրում տանձը, որ ամեն զգուշություն մոռացած՝ տանձի կտկտոցին եկել էր իր բաժինը տանելու: Այդ է պատճառը, որ հայ ժողովրդական մի առած ասում է. արջը յոթ երգ գիտի, յոթն էլ տանձի մասին է... Սիրում է նաև կաղին, հաճար, սալոր, սինձ, մասուր, մոռ: Մի տեսնեք, թե ինչպե՛ս է հաղարջի բարձր թփերը կռացնում և թաթերով սև ողկույզները քամում լայն բերանի մեջ..*

*Հաճախ անտառից դուրս է գալիս գընում հանդերում իր սիրած կանաչեղենն ուտելու: Այդ է պատճառը, որ ամառվա ամիսներին թափառող արջեր են երևում Մարտունու, Վարդենիսի, Արագածի, Աժդահակի մերկ սարալանջերին: Իհարկե, եթե քաղցած է լինում, հարձակվում է նաև ոչխարի հոտի և տավարի նախրի վրա: Բայց դա քիչ է պատահում: Շատ սիրում է նաև մեղր՝ թե՛ վայրի, թե՛ ընտանի:*

*Գույնը իր միջավայրինն է: Մռայլ անտառներում թխավուն է, իսկ Փոքր Կովկասի հարավ նայող ժայռոտ լանջերին հաճախ են հանդիպում գորշ և նույնիսկ շիկավուն, բաց գույնի արջեր:*

*Ռուսաստանում արջը ձմռան քուն է մտնում խոշոր ծառի լայն փչակում կամ, ավելի հաճախ, քամու տապալած ծառի ահագին արմատակույտի թմբի տակ: Իսկ մեզ մոտ արջերը քնում են քարանձավներում:*

*Աշնանը, քուն մտնելուց առաջ, արջը խիստ գիրանում է, այսինքն՝ ձմռան վառելիքի պաշար է հավաքում կաշվի տակ: Այդ «վառելիքով» (ճարպով) էլ ապրում է ամբողջ ձմեռը և գարնանը իր որջից դուրս է գալիս խիստ նիհարած: Հենց որջում էլ մայր արջը ձագեր է բերում՝ 2—3, երբեմն նույնիսկ 4 հատ: Դրանք սկզբում փոքրիկ, կույր և անօգնական արարածներ են, որոնք մեկ-երկու ամիս իրենց քնած մոր կաթը ծծելով՝ հետզհետե խոշորանում են: Մայր արջը գարնանը որջից դուրս է գալիս ձագերը հետևից գցած և այնուհետև նրանց կերակրում է հարսնյակներով, որդերով, պտուղներով, դալար թանջարներով:*

*Արջը, եթե չեն նեղացնում, անվնաս կենդանի է: Չզարմանաք, եթե ասեմ, որ նրան կարելի է նույնիսկ մեր բնության զարդերից համարել: Գիշատիչ գազանը զա՞րդ.. Այո՛: Երանի հետս լինեիք և տեսնեիք, թե ինչպես է քոթոթներին չփչփալով լողացնում գետի մեջ, ինչպես է սովորեցնում թավալ-թավալ գլդորվել լեռան կանաչ լանջին: Տեսնեք, թե ինչպես են քոթոթները կռիվ բռնում իրար հետ: Տարիներ առաջ Ջերմուկ առողջարանում ես տեսել եմ, թե ինչպես արջը իր քոթոթներով տանձ է հավաքում դիմացի անտառում: Հովեկները ժայռի գլխին հավաքված դիտում էին և ուրախանում: Այն ժամանակ ես մտածում էի. «Բա ափսոս չե՞ն էս կենդանիները, որ սպանում ենք...»*

*Այսքանը՝ արջի մասին: Հաջորդ անգամ կգրենք մեր երկրի հովազների մասին:*



## ԴԵՂՆԻԿԸ

Ամառային արձակուրդներին էր: Ես մորս հետ հանգստանում էի գյուղում՝ պապիս մոտ: Ընկերոջս՝ Ռուբիկի օգնությամբ ձեռք էի բերել մի փոքրիկ լորտու: Դեղնիկը՝ այդպես էինք անվանում լորտուին, շատ էր դուր գալիս ինձ և իմ ընկերներին, խաղում էինք հետը, փաղաքշում: Մայրս դեմ էր նրան տան մեջ պահելուն և գուցե տանից վռնդեր, եթե չպատահեր այս դեպքը:

Օգոստոսյան շոգ օրերից մեկն էր: Ես, մայրս և մորաքույրս դուրս էինք եկել տանից և բարձրանում էինք բլուրը զբոսնելու, երբ հանկարծ մորս առջև, ոտքերի մոտ, երևաց մի օձ: Ես ճչացի, Դեղնիկը ձեռքիցս պոկվելով, հարձակվեց օձի վրա: Օձը հեռանալով մորիցս, ընդունեց մարտական դիրք և պատրաստվեց մենամարտի: Դեղնիկը, առանց ժամանակ կորցնելու, հասավ օձին, բռնեց նրա գլխից և սկսեց խեղդել: Մենք շունչներս պահած սպասում էինք մենամարտի ավարտին: Դեղնիկը հաղթեց: Մայրս չկարողացավ զսպել իր հիացմունքը, ձեռքն առավ Դեղնիկին ու սկսեց շոյել:

— Այս փոքրիկ կենդանին փրկեց իմ կյանքը,—

---

# ԼԱՎՈՒԹՅՈՒՆ ԱՐԱ, ՋՈՒՐԸ ԳՑԻՐ

**(Հայ ժողովրդական հեքիաթ)**

*Հովիվ Մարտոն ամեն առավոտ ոչխարը հանդ տանելիս՝ դեռ ինքը հաց չկերած՝ մի լավաշ էր գցում Մեղրագետը:*

*— Հայրի՛կ, ինչո՞ւ ես հացը ջուրը գցում,— հարցրեց մի անգամ հովվի միանուճար որդին՝ Սարոն, որն հաճախ հոր հետ հանդ էր գնում:*

*— Ձկների համար, Սարո՛ ջան: Ո՞վ գիտի, սոված կլինեն, թող ուտեն կշտանան:*

*Տղան էլ հորից սովորեց, ամեն օր նախաճաշին վերցնում էր մի լավաշ ու գցում գետը: Ձկները ճանաչում էին արդեն բարի հովվին ու իր տղային: Գլուխները ջրից դուրս հանած՝ նրանք սպասում էին փոքրիկ Սարոյին: Եվ երբ նա լավաշը ջուրն էր նետում, ուրախ-ուրախ վրա էին հասնում, հացը քաշքշում-տանում ջրի տակ:*

*Բայց մի օր մեծ դժբախտություն պատահեց: Կամրջով անցնելիս, ինչպես եղավ, Սարոյի ոտքը սայթաքեց և, չանցած մի վայրկյան, տղան արդեն գլորվում էր գետի կատաղի ալիքների մեջ: Հայրը հեռվից տեսավ, բայց մինչև տեղ հասավ, տղան էլ աչքից չերևաց. սուզվել էր ջրում: Խեղճ հովիվը գլխին խփեց, ծնկին խփեց, բայց ի՞նչ օգուտ: Յոթն օր, յոթը գիշեր նրա ու կնոջ աչքի արցունքը չկտրվեց...*



*Յոթերորդ օրը արևածագին մեկ էլ հանկարծ Սարոն հայտնվեց.*

*— Վա՜յ, բալա՛ ջան... էս երա՞զ է:*

*— Չէ՛... Ծանոթ ձկներն ինձ փրկեցին...*

*Եվ Սարոն պատմեց, թե ինչպես ձկներն խսկույն օգնության են հասնում իրեն: Առնելով իրենց թևերին՝ նրանք տղային տանում են ձկների թագավորի պալատը:*

*— Ահա՛ այս տղան էր,— ասում են,— որ մեզ համար ամեն օր մի լավաշ էր բերում:*

*— Դո՞ւ ես այդ բարի տղան,— ասում է թագավորը:— Դե որ այդպես է, մի՛ մտածիր, քեզ ոչինչ էլ չի պատահի: Ասա՛, ինչ որ ուզում ես, խսկույն կկատարենք:*

*— Ես ոչ մի բան չեմ ուզում,— մրմնջում է տղան,— միայն ուզում եմ գնալ մեր տուն, հայրիկիս ու մայրիկիս մոտ:*

*Տղային փորձելու համար թագավորն ասում է.*

*— Քո հայրը սովորական հովիվ է, քեզ չի կարող լավ պահել: Ես ծովերի թագավորն եմ, ունեմ անչափ հարստություն, բայց ժառանգ չունեմ: Արի դարձիր իմ տղան, իմ մահից հետո էլ դու թագավոր կդառնաս:*

*— Չէ՛, ես թագավոր դառնալ չեմ ուզում,— ասում է տղան,— իմ հայրն ու մայրն էլ ինձանից բացի ուրիշ զավակ չունեն, ես պիտի մեծանամ, նրանց պահեմ:*

կրկնում էր նա: Իսկ Դեղնիկը գունդուկծիկ դառած՝ տեղավորվել էր մորս ափի մեջ և գլուխը ափից ցած կախել: Այդ օրվանից նա դարձավ բոլորիս սիրելին: Մայրս հիմա ինքն էր հոգում նրա սնունդը: Դեղնիկը միայնակ զբոսնում էր մեր բակում ընդհանուրի ուշադրության ներքո: Նա իրեն զգում էր այնպես ապահով, ինչպես մեզանից ամեն մեկը... Բայց իզո՜ւր:

Նա դուրս էր եկել հերթական զբոսանքի: Իսկ ես ներսում նոր ուսումնական տարվա համար պատրաստում էի դասագրքերս, կարգավորում. մինչև սեպտեմբեր մի քանի օր էր մնացել: Մեկ էլ ներս ընկավ փոքրիկ Արմենը:

— Դեղնիկին սպանել են...— հազիվ կարողացավ արտասանել նա:

— Ի՞նչ,— շանթահարվեցի ես:

— Նա հիմա ընկած է բակում:

Արմենը էլ չկարողացավ շարունակել, արցունքները խեղդում էին նրան: Մենք դուրս թռանք տնից: Ես ձեռքս առա Դեղնիկին... ուշացել էի: Երկար ժամանակ չէի կարողանում բաժանվել նրանից:

— Փո՛ս փորիր, թաղի՛ր,— ասաց մայրս: Նրա աչքերում էլ էր արցունքը լճացել:

Այդպես էլ արի:

ԴԱՎԻԹ ՈՍԿԵՐՉՅԱՆ

*Աբովյանի անվան դպրոցի 8-րդ դաս.*

---



*— Կեցցե՛ս,— ասում է թագավորը,— այդ քո ազնվության ու բարության համար մենք կկատարենք քո ցանկությունը: Միայն թե դու պիտի մի շաբաթ հյուր մնաս մեզ մոտ:*

*Եվ թագավորի հրամանով ձկնիկները Սարոյին մի շաբաթ ման ածեցին ջրի տակ, ցույց տվին իրենց բոլոր տեսարժան վայրերը, մարմարե պալատներն ու մամուռե պարտեզները, ինչպես նաև ամեն տեսակի զարդերով լցված գանձարանները և ապա նորից բերեցին թագավորի պալատը:*

*— Հը՞, հիմա ինչպե՞ս ես զգում քեզ,— հարցրեց թագավորը:*

*— Շատ լավ: Այնքան բաներ եմ տեսել, որ պատմելով չի վերջանա:*

*— Ապրե՛ս, ապրե՛ս,— ուրախացավ թագավորը:— Հիմա կարող ես լողալով ելնել գետափ ու ձեր տուն գնալ: Բայց կուզենայի իմանալ՝ արդյոք դու գիտե՞ս, թե քանի հաց եք գցել ջուրը մեզ համար:*

*— Ո՛չ,— ասաց Սարոն,— մենք չենք հաշվել:*

*— Ա՛յ, դա լավ է. բարություն անողը պետք է չհիշի իր արածը, իսկ բարիք ստացողը պետք է չմոռանա: Մենք հաշվել ենք ձեր տված հացերը, դրանց փոխարեն դու մեզնից նվեր կստանաս նույնքան մարգարիտ ու անգին քար:*

*— Ո՛չ, ո՛չ, շնորհակալ եմ, միայն թույլ տվեք ես տուն գնամ:*

*— Ահա՛ թե ինչ... խելո՛ք տղաս, նվերից չի կարելի հրաժարվել, դա վիրավորական է:*

*Եվ թագավորը մամուռե թելերի վրա շարված գոհարներն ու մարգարիտները կապեց տղայի մեջքին, համբուրեց նրա ճակատն ու ասաց.*

*— Դե՛հ, գնաս բարով:*

*Հարյուրավոր ձկնիկներ լողալով ուղեկցեցին տղային մինչև գետափ ու ետ դարձան:*

*Սարոյի հայրն ու մայրը այնքան էին ուրախացել, որ աչքերին ո՛չ գոհար էր երևում, ո՛չ մարգարիտ: Ամենաթանկ գանձը հենց իրենց կորցրած զավակն էր, որ նորից գտել էին: Ով գալիս էր նրանց տուն աչքալուսանքի, մի մարգարիտ կամ անգին քար նվեր էր ստանում: Բայց որքան էլ նվիրեցին, էլի շատը իրենց մնաց:*

*Ահա այդ օրվանից մարդիկ իրար ասում են՝ լավություն արա, ջուրը գցիր:*

*Մշակումը՝* ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ



*Նկ.* ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ




## ՍԵ՞Վ ՀԱՑ, ԹԵ՞ ՃԵՐՄԱԿ

Հնուց ի վեր մարդիկ համոզված են եղել, որ սև հացն ավելի օգտակար է, քան ճերմակը: Դեռևս հին Հունաստանում կարծում էին, թե գյուղացիները հատկապես դրան են պարտական իրենց առողջության և ուժի համար: Իսկ քաղաքաբնակների նրբակազմությունն ու վատառողջությունը վերագրում էին ճերմակ հացին:

Սև հացի վերաբերյալ այսպիսի գնահատականը իրոք ռեալ հիմք ունի: Դրանում համոզվում ենք, երբ ծանոթանում ենք հատիկի կառուցվածքին: Հատիկի արտաքին շերտը իրենից ներկայացնում է թաղանթանյութի մի պատիճ, որի տակ գտնվում է ըսպիտակուցներով հարուստ շերտը, ապա գալիս է ալրառատ կորիզը և, վերջապես, վիտամիններով լեցուն սաղմը: Ցորենի հատիկի մոտավորապես կեսը բաղկացած է ածխաջրերից, 5—8 %-ը՝ սպիտակուցներից, իսկ գլյուտամինաթթուն և նրա աղերը շատ կարևոր են օրգանիզմի համար, որոնք նաև առաջացնում են կուշտ լինելու զգացումը: Հացի շնորհիվ մենք լիովին բավարարում ենք օրգանիզմի երկաթի ու նիկոտինաթթվի պահանջը, $B_1$ վիտամինի 60 %-ը:

Հատիկը մանր աղալու դեպքում, որն անհրաժեշտ է ճերմակ հաց թխելու համար, սննդարար նյութերի մեծ մասը կորչում է (միայն $B_1$ վիտամինի 75 %-ը գնում է թափթփուկի հետ), մինչդեռ խոշոր ալյուրի մեջ սպիտակուցները, աղերն ու վիտամինները մնում են տեղում:

Սակայն դրա հետ միասին պետք է ասել, որ սև հացն էլ իր պակասություններն ունի: Դա այն է, որ խոշոր ալյուրից թխված հացը դժվար է յուրացվում օրգանիզմի կողմից:

Սև թե սպիտակ հացը հավասարապես են բարձրացնում շաքարի բաղադրությունը արյան մեջ: Բայց նույն քանակի բուլկի ուտելիս շաքարի բաղադրությունն ավելի է բարձրանում և դանդաղ էլ իջնում է, որովհետև բուլկու կեղևի քանակն ավելի մեծ է, քան սովորական հացի կտորի:

Դրա համար էլ կարելի է խորհուրդ տալ օգտագործել սև հացը, չարհամարհելով նաև նրա կեղևը:

Ժամանակակից մարդուն անհրաժեշտ է փոքրածավալ սնունդ, որը ածխաջրերով պակաս լինի, սակայն սպիտակուցներով և ճարպերով՝ հարուստ:

Այժմ չպետք է հարցնել՝ ո՞րն է լավ. սև՞, թե՞ ճերմակ հացը: Պետք է ուտել և՛ այս, և՛ այն:



## ԳՐԱԶ

*Սովորաբար այսպես վիճում են մանուկ հասակում.*

*— Իսկ, ա՛յ, եթե այս ճամփան բռնես գնաս, կհասնե՞ս երկնքին։*

*— Իսկ, ա՛յ, անձրևանոցով եթե ցած թռչես վերևից, կիջնե՞ս պարաշյուտի պես։*

*— Իսկ, ա՛յ, եթե գնես շա՜տ-շատ փուչիկներ, կարո՞ղ ես թռչել հասնել մինչև ամպը։*

*Մեծանալով, Սեմ Վոլբերգը որոշեց գլուխ բերել մանկության օրերի մի գրազը։ Նա գնեց «շա՜տ-շատ», 600 հատ, մանկական փուչիկներ, իրար կապեց, իրեն էլ դրանց կապեց ու ...երկինք թռավ։ Թռչում ու ծիծաղում էր երեխայի պես, ասես թե մանկացել էր մի պահ։ Հետո, երկնքում, սկսեց մեկ առ մեկ կտրել, բաց թողնել փուչիկները և շուտով հանգիստ ու թեթև իջավ գետնին։ Սեմ Վոլբերգը նորից տարեց մարդ դարձավ. Նա մոտեցավ ընկերներին ու ստացավ օրինականորեն տարած իր գրազը։*



## ԾԻՐԱՆԻ ՆԵՐԿԸ ՀԻՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Անտիկ աշխարհում ներկերի մեջ ամենափառաբանվածը համարվել է ծիրանագույնը, որն ըստանում էին տաք ծովերի մանրագույն կակղամորթներից: Մեկ գրամ ներկ ստանալու համար

պետք էր մշակել 8 հազար հատ կակղամորթ: Հին Հռոմում հասարակ մարդը իրավունք չուներ այդ գույնի զգեստ հագնել: Իսկ հռչակավոր հռետոր Ցիցերոնին, իբրև առանձնահատուկ մեծարանք, թույլատրված էր հագնել կրկնակի ներկված ծիրանագույն տոգա (զգեստ):

## ԻՆՉՊԵՍ ՉԱՓԵԼ ՀՈԳՆԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Թե ինչ է հոգնածությունը— ամեն ոք գիտե: Բայց ինչպե՞ս չափել այն:

Մարդու հոգնածության հետ բարձրանում է թքի թթվության աստիճանը, որի հետևանքով ատամների էմալի լուծելիությունը մեծանում է և թքի մեջ առաջանում է կալցիումի ու մագնեզիումի իոնների ավելցուկ:

Եվ ահա, Ճապոնիայում ստեղծել են կալցիումի և մագնեզիումի իոնների խտությունը չափող մի գործիք, որը, հասկանալի է, հենց հոգնածության աստիճանն է ցույց տալիս:

## ԳԻՇԱՏԻՉ ՄՐՋՅՈՒՆՆԵՐ

**Դուք երևի հաճախ եք անտառում կամ մի այլ տեղ հանդիպել մրջնանոցի, ուր եռուզեռով են անում մրջյունները: Նայելով այդքան փոքր, այդքան անվնաս այդ մրջյուններին, դժվար է պատկերացնել, որ արևադարձային անտառներում գոյություն ունեն մրջնատեսակներ, որոնց հետ հանդիպումը մարդու համար մահացու վտանգավոր է: Ահա թե ինչպես է նկարագրում այդ հանդիպումը մի լեհ ճանապարհորդ:**

«Ես նկատեցի, որ բոլոր կենդանիները ինչ-որ տագնապալի դրության մեջ են: Թռչուններն ասես խելագարվել էին ու տագնապալից ճչոցներով ճյուղից-ճյուղ էին թռչում: Կենդանիները՝ փոքր ու մեծ գազանները, գլխապատառ փախչում էին մացառների միջով: Անտառում անասելի ժխոր էր սկսվել: Ես հասկացա, որ ինչ-որ առանձնահատուկ բան է տեղի ունեցել:

Հետո միանգամից լռություն տիրեց ու քիչ անց ինձ հասավ մի խուլ սոսափյուն: Միաժամանակ օդում սուր թթվահոտ տարածվեց: Ես տեսա՝ ինձնից քիչ հեռու, խիտ բուսականության միջով՝ գետնի վրայով լայն շերտով շարժվում էր ինչ-որ սև պանգված՝ մրջյունները: Այո, դա իր ճանապարհին ամեն մի կենդանի բան ոչնչացնող գիշատիչ մրջյուններ՝ էցիտոններն էին: Ոչինչ չի կարող կանգնեցնել նրանց երթը, ո՛չ կենդանին, ո՛չ մարդը, ո՛չ գազանը: Ամեն ոք՝ մարդ թե կենդանի, ով չի կարող փախչել, ոչնչանում է՝ պոհ գնալով այդ գիշատիչներին»:

Ճանապարհորդի այս պատմածի մեջ չկա ոչ մի չափազանցություն: Հայտնի են դեպքեր, երբ այդ մրջյունները մի գիշերվա ընթացքում ոչնչացրել են վանդակում փակված ընձառյուծին: Եղել են և այնպիսի դեպքեր, երբ այդ մրջյունները ժամանակից շուտ ի կատար են ածել ծառին կապված և առանց հսկողության թողնված մահվան դատապարտված հանցագործի դատավճիռը: Եվ պատահական չէ, որ արևադարձային երկրների բնակիչները շտապ լքում են իրենց բնակավայրերը, երբ այդ գիշատիչ մրջյունների՝ էցիտոնների «երթը» մոտենում է իրենց բնակավայրերին:



## 4500 ՏԱՐԻ

*Քանի՞ հազարամյակի պատմություն ունեն երաժշտական գործիքները: Այժմ արդեն կարելի է ասել, որ երաժշտական գործիքները եղել են դեռ... քարե դարում: Այդ բանը ապացուցեցին Ռյազանի շրջանում նախամարդու բնակատեղիում կատարված պեղումները: Քարից, կավից, ոսկրից պատրաստված հինգ հազար իրերի մեջ, որոնք հայտնաբերվել էին այդ պեղումների ժամանակ, կային և թռչնի ոսկրից պատրաստված երկու ֆլեյտայատիպ երաժշտական գործիքներ, որոնք մասնագետների կարծիքով պատրաստվել են 4500 տարի առաջ: Գործիքներից մեկով հնարավոր եղավ հնչեցնել ձայներ, որոնք պատկերացում են տալիս քարե դարում ապրող մեր նախնիների երաժշտական «արվեստի» մասին:*

## ԱՄԵՆԱ... ԱՄԵՆԱ...

Մի անգլիացի լրագրող գտել է մարդու ամենակարճ ու ամենաերկար անուն-ազգանունը և ամենակարճ ու ամենաերկար տեղանունը: Ամենակարճ ազգանունը, որ գտել է նա, «Օ» ազգանունն է, իսկ ամենաերկարը—դա Հավայան կղզիներում բնակվող մի կնոջ անունն է, որի մեջ միայն 60 ձայնավոր կա:

Ամենակարճ տեղանունը ֆրանսիական մի փոքրիկ գյուղի անունն է: Այն կոչվում է «Ի»: Իսկ ամենաերկարը Նոր-Զելանդիայում գտնվող մի գյուղի անունն է, որը բաղկացած է 85 տառից: Այդ գյուղի անունը թարգմանվում է այսպես. «Քաղաք, որտեղ Տամատեան՝ հսկայական ոտքերով մարդը, որը ջարդում էր լեռները, վարում էր հողը ու ցանում, և որին Հողակեր էին անվանում, նվագել է ֆլեյտայի վրա իր սիրուհու համար»:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

## ԴԱՆԱԿ ԵՎ ՊԱՏԱՌԱՔԱՂ

*Երբ նայում ենք ճաշի համար պատրաստված սեղանին, յուրաքանչյուր ափսեի մոտ դրված դանակ ու պատառաքաղին, թվում է, թե հարազատ քույր ու եղբայր են, ծնված միասին, միշտ միասին լինելու համար:*

*Բայց արդյո՞ք այդպես է: Իհարկե, ոչ: Դանակ «եղբայրը» իր «քույր» պատառաքաղից շատ ծեր է… գրեթե ծնվել է մարդու հետ, անհրաժեշտության թելադրանքով: Դանակը գոյություն ունի պալեոլիթի (հին քարե դար) սկզբնական շրջանից, որի տարիքը միլիոն տարուց պակաս չէ:*

*Նախնադարյան մարդը իր քարե դանակի միջոցով, տասնյակ հազարավոր տարիների ընթացքում, վերափոխվել է, հաջորդաբար վերափոխելով իր դանակը՝ քարը-բրոնզի, բրոնզը-երկաթի, իսկ երկաթն էլ՝ պողպատի և հասել այսօրվա դանակին: Ահա այդքան երկար ու դժվարին ճանապարհ է անցել մեզ այդքան ծանոթ և անհրաժեշտ դանակը:*

*Ուրիշ բան է պատառաքաղը. կան տվյալներ, որ պատառաքաղի նմուշը գտնվել է Պոմպեյի ավերակների պեղումների ժամանակ:*

*Այդ պատառաքաղը կարճ պոչով երկժանի է, մի քիչ նման կոմերտոնի: Սակայն պատառաքաղի գործածությունը 300 տարուց ավելի չէ… Այն էլ սկզբում թագավորների ու պալատականների և ապա ազնվականների՝ ծալքավոր ժանյակազարդ վզկապներ (ժաբոներ) գործածող մարդկանց կողմից:*

*Այսպիսով, այդքան ծեր դանակը և խիստ երիտասարդ պատառաքաղը քույր ու եղբայր դարձած՝ զարդարում են բոլորի սեղանները:*

## ՀԱԿԱՌԱԿ ՀՐԱՄԱՆԻ

Գրպանի թաշկինակը առաջին անգամ գործ է ածվել 400 տարի առաջ, վենետիկցի մի հարուստ կնոջ կողմից: Այս նորաձևությունը մեծ հաջողություն է ունեցել ու մեծ արագությամբ տարածվել ամեն տեղ:

Թաշկինակ սկսեցին գործածել նաև Ֆրանսիայում, Հենրիխ 2-րդ թագավորի-նրբունիքի իշխանուհիները և տիկինները:

Այդ ժամանակվա թաշկինակները թանկարժեք հյուսվածքներ էին, ճոխ զարդարանքներով պերճանքի առարկաներ: Հենրիխ 3-րդ թագավորի օրոք սկսեցին անուշահոտել թաշկինակները:

Շատ անգամ բարձր խավի կողմից նշանախոսության ժամանակ թաշկինակը ուղարկում էին իբրև նվեր: 1595 թվականին մի հրամանագիր հրապարակվեց, որով արգելվում էր թաշկինակի գործածությունը ժողովրդի կողմից:

Սակայն այդ հրամանագիրը հակառակ ներգործություն ունեցավ. թաշկինակի գործածությունը տարածվեց ամբողջ աշխարհում:

***ԱՐՇԱԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ***



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 6 հունիս 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05588: Պատվեր՝ 454: Տպաքանակ՝ 70100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 10/VI, 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

# ՈՒՐԱԽ ՄՐՑԱԽԱՂԵՐ






## ԾՈՎԱՅԻՆ ԱՌՅՈՒԾ

Խաղացողները կազմում են մի շրջան: Կենտրոնում կանգնում է մեկը՝ «ծովային առյուծը»: Նա փորձում է հասնել գնդակին, որը փոխանցվում է շրջանի մեջ: Ում նետած գնդակը բռնի ծովային առյուծը, նրանք կփոխանակեն իրենց տեղերը:

## ՋՐԱՅԻՆ ՕՁ

*Բոլոր խաղացողները կանգնում են շարքով՝ մեկը մյուսի ետևից: Յուրաքանչյուրը բռնում է իր առջևի խաղընկերոջ մեջքից: Առջևի խաղացողը՝ օձի գլուխը, փորձում է վերջին խաղացողին՝ օձի պոչին, բռնել: Եթե հաջողվի նրան այդ անել, ուրեմն վերջին խաղացողը դուրս կգա խաղից:*

## «ԹՈՊԱ»

Հրապարակի վրա գծվում է մի փոքր և մի մեծ շրջանագիծ (1—2 մ. տրամագծով): Փոքր շրջանագծի մեջ են գցում մի գունավոր գնդակ, որն Իրանում կոչվում է «Թոպա»: Մեծ շրջանագծում մի խաղացող պահպանում է գնդակը: Բոլոր մնացած խաղացողները շրջանագծից դուրս են գտնվում և փորձում են ներսի շրջանագծից գնդակը դուրս բերել: Գնդակ պաշտպանողը ձեռքով պետք է հարվածի հարձակվողներին: Ում հարվածում է, նա խաղից դուրս է գալիս: Իսկ ում հաջողվում է գնդակը շրջանագծից դուրս հանել, նա դառնում է պաշտպան: Հաղթող համարվում է այն գնդակ պաշտպանողը, որը բոլորին հարվածում է, առանց գնդակը շրջանագծից դուրս թողնելու:

*Գերմաներենից թարգմանեց՝ ՎԻԿՏՈՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ*



## ՆԱՎԻՑ ԵՌԱՆԿՅՈՒՆԻ

*Այս վեց երկրաչափական ձևերը, որոնցից կազմըված է նավը, միացրեք իրար այնպես, որ ստացվի հավասարակողմ եռանկյունի:*

*Ձևերը կարելի է կտրել ստվարաթղթից:*



## ԵՐԵՔ ԳԾՈՎ

*Մատիտը թղթից չհեռացնելով, տարեք երեք ուղիղ գիծ, այնպես, որ նրանք անցնեն բոլոր շրջանագծերի վրայով:*

ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆ



10 կ. ԻՆԴԵՔՍ՝ 77806

Ինչեր չի ստեղծում բնությունը: Շան կերպարանք ունեցող այս քարաժայռը գտնվում է Գորիսում: Իսկ այս քարաշեն բերդ-ամրոցը գտնվում է նույն շրջանի Խնձորեսկ գյուղում: Այստեղից Մխիթար Սպարապետը կռվել է օտարերկրյա զավթիչների դեմ:

*Տեքստը և լուսանկարները՝*
*Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*